# Խոհեր «է»-ի մասին

Հայոց լեզվին պատուհասած աղետներից նորագույնին՝ համընդհանուր դարձած եւ լեզվի ավանդականությունը հիմքից խարխլող «ա»ախոսությանը մենք անդրադարձել ենք քանիցս՝ յուրաքանչյուր հաջորդ հրապարակմամբ ավելի տխուր, ավելի ահազնացող եւ տագնապալից վիճակ արձանագրելով:

«Ա»ախոսության չարիքը մեր լեզվում սկսեց տարածվել, երբ մի քանի վայ-արվեստագետների եւ կինոբեմադրիչների՝ հերոսներին «ա»ախոս դարձնելով իբրեւ թե խոսքի առավելագույն հավաստիության ու բնականության հասնելու մտասեւեռումը սկսեց իրականություն դառնալ, եւ դա այն դեպքում, երբ եկել էին լեզվի հանդեպ քամահրական վերաբերմունքի ու բարձիթողիության աննախադեպ ժամանակներ: Եվ եթե այն օրերին ընդամենը մտայնություն էր, հիմա արդեն ձեւավորվել է համոզմունք, որ «է»-ի փոխարեն «ա» օժանդակ բայ գործածելով՝ մեկընդմիշտ լուծվում են խոսքի բնականության խնդիրները: Այս համոզումն սկսեց իշխել առավելապես հոռուստաեթերում, հետեւաբար հենց այդտեղից էլ սկսեց հնչել, ապա անկասելի հորդել «ա»ախոսությունը՝ իր համընդհանուր ու նաեւ պաշտոնական գործառնումով հանգեցնելով այն բանին, որ ի վերջո սկսեց այլեւս չգիտակցվել իբրեւ լեզվի աղավաղում:

Բայց դա չարյաց փոքրագույնն էր, քանզի հետո կատարվեց աղետալին՝ «ա»ախոսությունն անտեսելն ու չգիտակցելը ոչ թե որպես սովորական աղավաղում, սովորական սխալ, այլ որպես մեծագույն սպառնալիք ու մարտահրավեր: Եվ հիմա արդեն ո՛ւմ ասես կլսեք «ա»ախոս՝ պատգամավորին ու նախարարին, պաշտոնյային ու գիտնականին: «Ա»ախոս են նույնիսկ նրանք, ովքեր կարծես ավելի նախանձախնդրորեն պիտի հետեւեին այս չարիքից մեր լեզուն պաշտպանելուն. հայ հոգեւորականն է «ա»ախոս, հայ գրողն է «ա»ախոս: «Մեր լեզուն, մեր խոսքը» հաղորդաշարին հյուր գնացած եւ մայրենիի գովքն անող Հայաստանի գրողների միության նախագահն է «ա»խոս, ով ի լուր հայության հնչեցնում է՝ «տանում ա», «խոսում ա», «մտածում ա», «ինքն ա» («Արմենիա» հ/ը, 24 հոկտեմբեր 2010): «Ա»ախոս է Ռուբեն Հովսեփյանը, ով իրեն նվիրված հեռուստաակնարկում («Երկիր Մեդիա», 27 նոյեմբեր 2010) խոսում է «ա»-ով, եւ որքան էլ նրա խոսքը խորիմաստ է ու խոհուն, միեւնույն է, դա ծանրակշիռ խոսք չէ, քանզի գրողն իր բառապաշարից, ավաղ, ավաղ, ավաղ, անփութորեն վտարել է «է»-ն:

Ահա այսպես՝ իբրեւ թե բնական խոսք հնչեցնելու, իրականում հանուն մի կեղծ նպատակի մոռացության վիհն ենք նետում հայոց նախաբառ «է»-ն, որ Մաշտոցի ձեռքով նույնիսկ սրբացվել է՝ դառնալով մեր այբուբենի յոթերորդ տառը: Չմոռանանք նաեւ, որ «Է»-ն Աստծո ստորոգելիներից է, հետեւաբար՝ վերստին սուրբ ու անջնջելի: Ուրեմն որտեղի՞ց մեզ ամենայն սրբություն ջնջելու եւ մոռացության տալու այս անմիտ ջանադրությունը, ինքնաոչնչացման այս անմեկնելի նկրտումը:

«Ա»խոսության համընդհանուր ծավալումը, անշուշտ, ուղղակի կապ ունի բարբառներից հարստանալու օգտվելու եւ նրանց կենսականությամբ նաեւ գրական լեզուն կենդանի պահելու այն մտահոգությունների հետ, որոնք բնավ էլ նոր չեն: Սակայն, ցավոք, նույնիսկ լեզվաբանական շրջանակներում բարբառներից օգտվելու խնդիրը սկսել է շեշտադրվել սոսկ արտաքին երեւույթի առումով. կարեւորն ու կարեւին դարձել է ամենադյուրինը՝ բարբառներից ժողովրդական ոճի բառ ու դարձվածքը գրական խոսք արհեստականորեն տեղափոխելու հանգամանքը, մինչդեռ բարբառներից օգտվելն ավելի շատ պիտի ենթադրեր բարբառի այնպիսի յուրացում, որը կնպաստեր բնական դարձնել լեզվամտածողությունը: Բայց մենք, ինչպես ասացինք, առայսօր գնում ենք բարբառներից գրական լեզու որոշակի բառամթերք ուղղակի տեղափոխելու ճանապարհով, ինչը ոչ միայն ավելի բնական, ավելի անբռնազբոս չի դարձնում մեր լեզվամտածողությունը, ոչ միայն չի հարստացնում գրական լեզվի շտեմարանը, այլեւ խոսքը դարձնում է գռեհիկ, աղքատ ու գետնաքարշ: Այս են վկայում մեր բազմաթիվ հեռուստարնկերություններ անթիվ սերիալները, փողոցի լեզվով ու ժարգոնով խոսող, համարյա առանց բացառության «ա»ախոսող նրանց անհամար հերոսները: Եվ մայրենին առավելագույն չափով նսեմացնելու առաջատարներից մեկը Հայաստանի հանրային հեռուստատեսությունն է, որ հանապազօր գեղեցիկ խոսք հնչեցնելու փոխարեն՝ ավերում է մեր լեզուն հենց միայն համատարած «ա»ախոսությամբ:

Անշուշտ, ոչ ոք չի ժխտում բարբառներից նաեւ այդ բառ ու դարձվածք ուղղակի յուրացնելու ճանապարհով գրական խոսքը հարստացնելու եւ ավելի կենդանի դարձնելու անհրաժեշտությունը, բայց գրական լեզուն բարբառներով սնող հունը պետք էր բացել ոչ թե հախուռն ու անվերահսկելի կերպով, այլ խելամտորեն, զգուշորեն, նախանձախնդրորեն: Ցավոք, մենք չեղանք ո՛չ խելամիտ, ո՛չ զգուշավոր, ո՛չ էլ, առավել եւս, նախանձախնդիր: Եվ մեր լեզուն սնուցող կենարար հունը չդիմացավ այն անզուսպ հեղեղին, որ մեր գլխին թափեցին «նորարարները». նախ՝ հեղեղն իր հետ սրբեց-տարավ հենց իրեն՝ հունը, ինչի հետեւանքով կորսվեց լեզվի զարգացման ուղղությունը, ապա հեղեղը տարավ այն արգելակ-փականները, որոնք կանոնավորում եւ անհրաժեշտ չափի մեջ էին պահում բարբառ-գրական լեզու փոխաթափանցումները:

Այդ կարեւորագույն փականներից մեկն էր «է»-ն, որը նույնպես եւ կարծես անդարձ իր հետ տանում է հեղեղը...

Բարբառներից անհրաժեշտ չափով օգտվելու խորհուրդ ժամանակին տալիս էր Հովհ. Թումանյանը, եւ ինքն էլ տալիս էր դրա օրինակը: Բայց «էս» ու «էն»-ի համար կռիվ տվող գրողի մտքով երբեք չանցավ հանուն խոսքի բնականության զոհել «է»-ն: Բարբառի համով-հոտով բառապաշարով խոսեցնելով իր գեղջուկ հերոսներին՝ գրողն այնուամենայնիվ նրանց խոսքից գրեթե բացառել է «ա»ախոսությունը: Ահավասիկ երկու հատված «Արջառոս» պատմվածքից՝ համոզվելու, թե հերոսի գեղջկական լեզվում որպիսի բնականությամբ է հնչում այսօր համընդհանուր կերպով մերժվող «է»-ն:

«Հիմի մի աշունքվա գիշեր բերել ենք խոզը իր նիստը արել ու դափի դռանը մի կրակ վառել, որ բոցն աստծու ոտներն էրում է: Մի լուսնյակ գիշեր է: Ես պկու եմ ածում, էս Ավագն էլ մի բայաթի է վեր քաշել, որ սար ու ձոր զվգվում են:

Մին էլ Ավագը թե՝ «Ա՜յ տղա, էն ո՞վ է, հրե մի մարդ է գալի վերի կոնիցը»:

Մտիկ տամ տեսնեմ, դրուստ որ՝ մի մարդ է գալի վերեւիցը:

«Որ հրացանիս լուլիցը բռնեց, ես էլ կոթը պինդ բռնեցի: Հիմի նա օլորում է, ուզում է կոտրի, ես էլ օլորում եմ, որ հենց անեմ ծերը վրեն ընկնի, հուպ տամ, ծուխը փորն ածեմ: Բայց անտերը գլխի է ընկել, թողնում չի»: («Արջառոս», 1899)

Բարբառային բազմաթիվ բառերի, դարձվածքների (աշունքվա, նիստ, դափ, էրել, պկու, ածել, բայաթի, լուլա, օլորել, հենց (այնպես), ծեր, վրեն, հուպ տալ, փորն ածել) այս շարքում տեսեք որքա՜ն արժանապատիվ տեղ եւ մաքուր կեցվածք է վերապահված հնօրյա «է»-ին, եւ որքա՜ն բան կխաթարվեր հերոսի խոսքում, որքա՜ն պարզունակ կդառնար նրա լեզուն, եթե նա «ա»ախոսեր:

«Ա»ախոսությամբ իր գեղջուկ հերոսներին ներկայացնելու հակում ուներ Ակսել Բակունցը: «Մթնաձոր» ժողովածուի նրա գրեթե բոլոր հերոսները «ա»խոսում են: Հետաքրքրականը, սակայն, այն է, որ Բակունցը հետզհետե հեռանում է «ա»ախոսությամբ իր հերոսների խոսքը բնական դարձնելու մտայնությունից, եւ ավելի ուշ շրջանի նրա պատմվածքներում, «Կյորես» վիպակում ու «Կարմրաքարում» հերոսները այլեւս «է»ախոս են: Անշուշտ, դժվար է պնդել, թե Բակունցն «ա»խոսությունից «է»ախոսության անցումն արել է նախածրագրված. կարծում ենք՝ անցումը տեղի է ունեցել անզգայաբար, եւ բակունցյան «է»ախոս հերոսները հնօրյա «է»-ին հեղինակի միանգամայն բնական վերադարձի արտահայտություններն են:

Չեն «ա»ախոսում լոռեցի մյուս մեծի՝ Հրանտ Մաթեւոսյանի հերոսները: Վերստին կարդանք՝ համոզվելու, թե Լոռու ի՜նչ հրաշալի բարբառ է հնչում նրա պատմվածքներում ու վիպակներում, եւ չնայած դրան՝ հերոսների խոսքը վերստին հնչում է զարմանալի մաքուր, զարմանալի գրական: Եվ նորից անփոխարինելի դերակատարություն ունի «է»-ն, որը հնամենի բնականությամբ եւ իր սովորական գոյությամբ արդեն ապահովում է խոսքի կանոնականությունը: «-Ես քո թշնամին չեմ, - ասաց պառավը: - Մի՛ գլուխ սիտորի էի եկել, չգիտեմ մերը պրծե՞լ է, թե երեխեքն են կորցրել: - Եվ Աղունի հետ գնալով սիտորի եւ հիանալով մառանի առատությամբ ու կարգուկանոնով, պառավն ասում էր պատմելու պես. - Որդին հարսինն է, աղջիկը՝ փեսայինը. շաղ են գալիս՝ տանը մնում ես մենակ. լավ է թե վատն է՝ մարդն է քոնը. ամեն մեկը իրենը գտնում է՝ քոնը

➲20

19➲

քո մարդն է. քառասուն տարեկան կորցրիր թե ութանասուն՝ ամենամեծ կորուստդ է. զավակները հայր են կորցնում, հարսները սկեսրայր են կորցնում, թոռները՝ պապ, իսկ դու քեզ ես կորցնում, քանզի ոչնչի պետք չի լծի կենտ եզը: Քանզի դու նրա հետ եզ էիր ու գութան էիր քաշում»: («Աշնան արեւ»). Ուշադրություն դարձնենք, թե պառավ կնոջ բերանում ի՛նչ բնական հնչողություն ունի «քանզի» բառը, թեեւ մեր հայտնի լեզվաբաններից մեկը նույն այդ «քանզի»-ն համարում է խիստ գրական՝ վերամբարձ ոճի բառ: Բայց առավել ուշագրավը «է» օժանդակ բառի գործածությունն է, որն իր գոյությամբ իսկ պառավ կնոջ խոսքը պահում է գեղեցիկ գրական խոսքի սահմաններում:

Այսպիսով՝ «է»-ի ոճական նշանակությունը վիթխարի է: Հայտնվելով գրավոր եւ բանավոր խոսքում՝ նա միայնակ էլ, ինչպես վերը բերված օրինակներում, կարողանում է խոսքը պահել գրական լեզվի տիրույթներում՝ անկախ նույնիսկ այն բանից, թե խոսքը որքան է հագեցած բարբառային եւ օտար բառերով: Մինչդեռ ահա զուտ գրական բառերով կառուցված գրավոր կամ բանավոր խոսքում «է»-ի փոխարինումը «ա»-ով միանգամից ամբողջ լեզվական կառույցը դարձնում է բարբառային: Հայաստանի հանրային հեռուստաընկերության սերիալներից մեկի հերոսն ասում է. «Երբեք չէի կարող մտածել, թե իմ ուզածը սա (յ)ա, երբեք չեմ կարծել, թե գալու (յ)ա մի օր, երբ իմ ա լինելու այս ամբողջ հարստությունը»: Նկատենք, որ բերված նախադասության մեջ բարբառային ոչ մի բառ չկա, եւ ամեն ինչ կարծես գրական խոսքի սահմաններում է, սակայն հերոսի «ա»խոսությունը կտրուկ փոխում է այդ տպավորությունը՝ ամբողջ խոսքը դարձնելով բարբառային եւ նսեմած:

Հսկայական է «է»-ի պատմամշակութային նշանակությունը նույնպես: «Է»-ն ոչ միայն կարեւոր կամուրջ է աշխարհաբարի եւ գրաբարի միջեւ, այլեւ յուրատեսակ ծածկագիր է, որը պահպանում է այդ երկու լեզուների ժառանգորդությունը:

«Է»-ն միմյանց աղերսում եւ միմյանց հարազատ է պահում նաեւ արեւելահայերենն ու արեւմտահայերենը, իսկ համընդհանուր դարձող «ա»խոսությունն, ահա, հանելու փոխարեն մի սեպ էլ է խրում վերջիններիս միջեւ: Արդ, տեղին է հիշել, որ ՅՈՒՆԵՍԿՕ-ն արեւմտահայերենը գրանցել է իբրեւ աշխարհի վտանգված լեզուներից մեկը, եւ արեւելահայերենից «է»-ի անփույթ վտարմամբ ե՛ւս մի սպառնալիք է հայտնվում արեւմտահայերենի համար, քանի որ այդ վտանգված լեզվի գոյությունը հետայսու շատ բաներով պայմանավորված է լինելու նաեւ արեւելահայերենի հետ ունեցած ընդհանրություններով: «Է»-ն այդ ընդհանրությունը ստեպ-ստեպ մատնացուցող, երկու լեզուներում էլ առավել հաճախ հնչող, քան որեւէ այլ լեզվական միավոր, բառերից է:

Վերջապես, «է»-ն հայոց լեզվով երբեւէ եղած սեղմ ու ամենաիմաստալից բառն է, քանզի մեր լեզուն չի ունեցել եւ չունի երկրորդ միահնչյուն իմաստակիր արմատ-բառ, որպիսին է «է»-ն: Եվ որովհետեւ յուրաքանչյուր լեզու իր նախնական վիճակի մեջ հատկանշվել է ամենից առաջ բառի սեղմությամբ, ուստի կարծում ենք, որ «է»-ն նաեւ մեր լեզվի ամենահին բառերից մեկն է՝ վաղնջաբառը: Ավելին՝ կարծում ենք, որ «է»-ն իր արարչական էականությամբ թերեւս նույնիսկ հայերենի առաջին բառն է:

Ուրեմն մի՞թե մեզ տրված է արարումից հազարավոր տարիներ անց կորցնել «է»-ն՝ հայոց լեզվի մեծագույն արժեքներից մեկը:

Դժբախտաբար, վտանգը չափազանց իրական է. մենք այն կորցնում ենք:

***Լեւոն ՍԱՐԳՍՅԱՆ***

# ՊԱՀՊԱՆԵԼ ՀԱՅԻ ՈԳԻՆ ՈՒ ԿԱՊԸ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԵՏ


ДИАСПОРА
Սփյուռք
№ 7 (36)
2010 г.
«СОЮЗ АРМЯН АЛТАЙСКОГО КРАЯ»
АЛТАЙСКАЯ КРАЕВАЯ ОБЩЕСТВЕННАЯ ОРГАНИЗАЦИЯ

В НОМЕРЕ:
- События:
ПРОГРАММА «АРИ ТУН» СОБРАЛА АРМЯНСКУЮ МОЛОДЕЖЬ СО ВСЕГО МИРА — стр. 2-4
ШВЕЦИЯ ПРЗНАЛА ГЕНОЦИД АРМЯН — стр. 5
КОНЦЕРТ В НОВОСИБИРСКЕ — стр. 8-9
В БАРНАУЛЕ ПРОШЕЛ КОНЦЕРТ ПОПУЛЯРНОЙ ПЕВИЦЫ НАНА — стр. 10, 22-23
НАЗИК АВДАЛЯН – ЧЕМПИОНКА МИРА ПО ТЯЖЕЛОЙ АТЛЕТИКЕ — стр. 18-19
- Армянский раздел: — стр. 22-29
- Детский раздел: — стр. 24-25

Հեռավոր Բառնաուլի հայ բնակիչների նպատակներից մեկը հայապահպանությունն է: Բառնաուլ քաղաքը Ռուսաստանի Ալթայի երկրամասի կենտրոնն է: Բառնաուլում շուրջ 30 հազար հայեր են ապրում, նրանցից մեկը մասնագիտությամբ բժիշկ Վարդան Գրիգորյանն է: Նա Հայաստանից գնացել է 1994 թվականին: Դեռ 1990-ականներից Վարդան Գրիգորյանը Բառնաուլում բնակվող մյուս հայերի հետ որոշում է անել հնարավոր ամեն ինչ ազգային ու հոգեւոր արժեքների, հայկական սովորույթների պահպանման համար: Բառնաուլում հիմա գործում են Ս. Հռիփսիմե հայկական եկեղեցին և կիրակնօրյա հայկական դպրոցը, որտեղ հաճախում են շուրջ 30 երեխաներ, նաև ստեղծվել է «Ալթայի երկրամասի հայերի միություն» կազմակերպությունը: Վարդան Գրիգորյանը վարչական կենտրոնի անդամներից է: Նա ասում է, որ իրենց կենտրոնը շատ ֆինանսավորում չի ստանում. «Ինչ-որ տեղերից գտնում ենք հովանավորների, բայց հիմնականում գումար են տրամադրում մեր անդամները»: Վարչության անդամները տալիս են անդամավճար՝ ամսական ով ինչքան կարող է: Ըստ Վ. Գրիգորյանի՝ անդամավճարներից քիչ գումար է հավաքվում, ինչն էլ հիմնականում հատկացվում է «Սփյուռք» ամսագրի հրատարակմանը, հայկական դպրոցին, այդ գումարից են նաև աշխատավարձ տալիս մանկավարժներին և փակում միջոցառումների կազմակերպման ծախսերը: Վարդան Գրիգորյանը պատմում է, որ Բառնաուլում ապրող հայերին հաջողվել է հիմնել «Սփյուռք» երկլեզու ամսագիրը, որը լույս է տեսնում 1999 թվականից: Տարիների ընթացքում ամսագիրը շատ է փոխվել թե՛ բովանդակության, թե՛ որակի առումով, հիմա տպագրվում է հայերեն ու ռուսերեն լեզուներով: «Եթե ֆինանսական միջոցները ներում են, «Սփյուռքը» ամեն ամիս հրատարակվում է», ավելացնում է Վարդան Գրիգորյանը, որը ամսագրի հիմնադիրներից է, ժամանակին խմբագրել է, իսկ ներկայումս վարում է մանկական բաժինը: Ամսագրի տպաքանակը հասնում է 300-ի, առաջ ավելի քիչ է եղել: Վ. Գրիգորյանը տեղեկացնում է, որ ամսագիրն անվճար է բաժանվում. «Մեր նպատակն է Բառնաուլում հնարավոր չափով պահպանել հայկական մթնոլորտն ու հայերի միասնությունը»: «Սփյուռքը» ունի քաղաքական և արվեստի նորությունների, պատմության, գրականության, մանկական և այլ բաժիններ: Անցյալ տարի նաև հրատարակվել է «Սփյուռքի» առանձին համար՝ նվիրված Մեծ եղեռնի տարելիցին: Բառնաուլում ամեն տարի ապրիլի 24-ը հիշվում է առանձնակի ձևով: Բացի ամսագրի հատուկ թողարկումից՝ Վ. Գրիգորյանն ասում է, որ 2010-ին բեմադրել են Ցեղասպանության 95-րդ տարելիցին նվիրված ներկայացում՝ «Երկխոսություն մեկ դար անց», որի սցենարի հեղինակն ու բեմադրող ռեժիսորը եղել է Վարդան Գրիգորյանը: Ապրիլի 24-ին եղել են նաև ասմունք, ազգային պար և դուդուկի կենդանի նվագակցություն: «Այս տարի էլ շարունակելու ենք նույն ոգով», ավելացնում է Վարդան Գրիգորյանը:

Բառնաուլում տարվա մեջ պարբերաբար կազմակերպվում են միջոցառումներ, որոնց նպատակն է հայերին հայկական մշակույթին հաղորդակից դարձնելը: «Մեր աշխատանքը նաև ուղղված է հայրենիքի հետ մեր կապն ամուր պահելուն», նշում է զրուցակիցս:

Կազմակերպչական հարցերով զբաղվում են վարչական կենտրոնը, կիրակնօրյա դպրոցի տնօրենն ու մանկավարժները:

Բառնաուլում հայերը հիմնականում զբաղվում են շինարարությամբ: Ինչպես Ռուսաստանում ապրող շատ հայեր, Վարդան Գրիգորյանը նույնպես ստիպված է եղել թողնել իր մասնագիտությունն ու տարբեր աշխատանքներ կատարել ապրուստ հայթայթելու համար: Չնայած զբաղվածությանը՝ նրան միշտ մտահոգել են համայնքում հայապահպանության խնդիրները: Դրա համար էլ նա ձեռնամուխ է եղել ամսագրի հրատարակմանն ու տարբեր միջոցառումների կազմակերպմանը: Վարդան Գրիգորյանը նաև բանաստեղծություններ և պատմվածքներ է գրում: Մինչև Հայաստանից մեկնելն այստեղ տպագրվել է, հիմա տպագրվում է միայն «Սփյուռք» ամսագրում: Ասում է, որ շփվել է Հովհաննես Շիրազի, Վարդգես Պետրոսյանի, Վահագն Դավթյանի հետ:

Հեռավոր Ալթայի երկրամասում հայկական մշակույթն ու լեզուն պահպանելը շատ դժվար է: «Հայկական ամեն բան պահպանելու համար պետք է առաջ շարժվել, տեղում կանգնել չի կարելի», ավելացնում է Վարդան Գրիգորյանը:

Ովքեր ուզում են ծանոթանալ «Սփյուռք» ամսագրին, կարող են զանգել Վարդան Գրիգորյանին 77007913210418 համարով:

***Ինգա ՊԵՏՐՈՍՅԱՆ***

ՕՐԻՆԱԿԵԼԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆ

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԿԱՐՈՂ Է ՄԱՐՈՂ ԴՊՐՈՑԸ ՆՈՐ ՇՈՒՆՉ ԱՌՆԵԼ

Չկալովը Լոռու մարզի բազմաթիվ փոքր համայնքներից մեկն է մեծ ու փոքր բազում հիմնախնդիրներով: Այստեղ գրեթե ահով էին վերաբերվում գլխավոր խնդրին` թե մեկ-երկու տարի ևս, և գյուղի հիմնական դպրոցը մարելով «կհանգչի»: Աշակերտների շարժի մատյանը դա էր վկայում, այս տարի ավարտեցին և դպրոցին հրաժեշտ տվեցին երեք շրջանավարտներ, ուսումը պիտի շարունակեր տասնմեկ աշակերտ: Ահավորը` իր երեխային այս տարի առաջին դասարան ընդունելու համար գյուղից դիմելու էր... ընդամենը մեկ երեխայի ծնող: Հաջորդ տարի այդ մեկն էլ չէր լինելու: Որովհետև երիտասարդ ընտանիքները այլևս քաղաքաբնակ են: Այնուամենայնիվ, այսօր կրթօջախը մարել-փակվելու հետ կապված ծանր մտորումները երկար ժամանակով կմարեն: Այս տարի Չկալովի հիմնական դպրոցն ուսումնական տարին կսկսի... քանյոթ աշակերտով: Հրա՞շք կատարվեց: Միանգամից ասենք` ոչ: Պարզապես` համայնքապետը, դպրոցի կառավարման խորհուրդը, գործադիր տնօրենն ու դպրոցի հոգսերը հոգալու նպատակով վերջերս ստեղծված հոգաբարձուների խորհուրդը արդյունավետ համագործակցեցին, անլուծելի թվացող խնդիրը լուծվեց: Այսօրինակ համագործակցության նախաձեռնողն ու շարժիչ ուժը դպրոցի նորանշանակ, բայց բազմափորձ տնօրեն Գագիկ Աբաբեկյանն է: Նա էլ պատմում է. «Գյուղական մարող դպրոցի տնօրինությունն ստանձնեցի Լոռու մարզպետ Արամ Քոչարյանի առաջարկով: Դպրոցը աշակերտներով համալրելու խնդիրը համայնքապետ Վիլյուն Շաքարյանի մասնակցությամբ քննարկվեց մանկավարժական խորհրդում: Գյուղապետը շահագրգիռ վերաբերմունք ցույց տվեց: Ձևավորվեց դպրոցի հոգաբարձուների խորհուրդ: Միասնական ջանքերով հարևան համայնքից դպրոցահասակ երեխաներ ունեցող մի ընտանիք տեղափոխվեց Չկալով` մշտական բնակության, որին համայնքապետը տուն տրամադրեց: Եվս տասնմեկ աշակերտների ծնողներ համաձայնեցին համապատասխան ուշադրության և աջակցության պարագայում իրենց երեխաների ուսման և դաստիարակության գործը վստահել Չկալովի հիմնական դպրոցի ուսուցիչներին: Լոռու մարզպետարանի աշխատակազմի ԿՄՍ վարչության պետ Մինաս Սայադյանը լուծեց աշակերտական սեղան-նստարանների հատկացման խնդիրը, իսկ «ԼՄՍԵ» հիմնադրամը կհոգա ուսուցիչներին ու աշակերտներին դպրոց բերող ու տուն տանող հոգաբարձուների վարձակալած ավտոբուսի վառելիքի հետ կապված ծախսերը»:

Վերջում նորանշանակ տնօրենը հույս հայտնեց, որ վերոհիշյալ համագործակցությունը արդյունավետ կլինի նաև ուսումնադաստիարակչական աշխատանքների բարելավման առումով:



Չկալովի հիմնական դպրոցի կոլեկտիվը



Կնունքի արարողություն

# ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԻ ԿՆՈՒՆՔ` ՈՒՍՈՒՑՉԻ ՕՐԸ

Ուսուցչի օրը յուրովի տոնեցին Թումանյանի տարածաշրջանի Չկալովի հիմնական դպրոցի ուսուցիչները: Մկրտվել փափագող յոթ ուսուցչուհիներ Հայ Առաքելական եկեղեցու ծիսակարգով Հաղպատավանքում ձեռամբ վանահայր հոգեշնորհ տեր Ասպետ վարդապետ Պալյանի` մկրտվեցին: Կնքահայրը Չկալովի հիմնական դպրոցի տնօրենի պաշտոնակատար, «Մաշտոց» ՀԿ նախագահ, կրթամշակութային նույնանուն հանդեսի խմբագրապետ Գագիկ Աբաբեկյանն էր: Արարողությանը ներկա էին դպրոցի կառավարման խորհրդի և Չկալով համայնքի ավագանու անդամներ, դպրոցի հոգաբարձուներ և համայնքապետ Վիլյուն Շաքարյանը:

Ուսուցիչի օրը կայացավ, օրվա խորհուրդը արժանվույն կարևորվեց աստվածահաճո ևս մի իրադարձությամբ:

Դպրոցի սկսնակ ուսուցիչներ Շուշանիկ Թումանյանը և Տաթևիկ Հովսեփյանը այսպես ներկայացրեցին իրենց զգացածը. «Մեծ խորհուրդ ունի այն, որ կյանքում կարևոր իրադարձություններից մեկը կատարվեց Հայոց հոգևոր կենտրոն Հաղպատավանքում և կնքահայրդ ուսուցիչ է, ում բախտ է վիճակվել լինել Երուսաղեմում, Հարության Տաճարում: Հպարտ ենք և ուրախ, իսկ օրվա խորհուրդը կուղեկցի մեզ ողջ կյանքում»:

Նշումներ էի կատարում ծոցատետրումս, երբ մահտեսի կնքահայրը ընկերաբար հարց ուղղեց ինձ. «Իսկ դուք, պարոն լրագրո՛ղ, որ անվճար օգտվում եք սուրբ Մեսրոպ Մաշտոցի երկնած այբուբենից և պատիվ ունեք ուսուցիչների կնունքի արարողության մասին գրելու, մկրտվա՞ծ եք»: Պատասխանեցի. «Խաչ կրում եմ, բայց...»: Եվ Հայ Առաքելական եկեղեցու ծիսակարգով մահտեսի գործընկերս սիրահոժար դարձավ նաև լրագրողիս կնքահայրը:

*Էջը պատրաստեց` Գագիկ ԱՆՏՈՆՅԱՆԸ*

*ԴՊՐՈՒԹՅԱՆ ԵՐԱԽՏԱՎՈՐԸ*

# ԳՈՒՐԳԵՆ ԵՍԱՅԱՆ 80



Կան մարդիկ, ովքեր իրենց ապրած ողջ գիտակցական կյանքում հավատարիմ են մնում ի վերուստ տրված մարդկային բարձր ու աստվածահաճո առաքելությանը: Սեր ու նվիրում գործին՝ այս դեպքում դրսևորվում են նաև կամային զորեղ հատկանիշներ ու անվերապահ սկզբունքայնություն: Այսպիսի բազում շնորհներով օժտված, իր հաճելի ներկայությամբ մեր կողքին է ապրում ու գործում 80-ամյա վաստակաշատ մանկավարժ Գուրգեն Եսայանը, ով արդեն 60 տարի սիրով նվիրվել է հայոց դպրության գործին:

Ծնվել է 1931 թվականին, Դիլիջանի տարածաշրջանի Շամախյան գյուղում, արհեստավորի ընտանիքում: Հայրը հմուտ դարբին է եղել, մայրը՝ բարեսիրտ դերձակ: 1942 թվականին Հայրենական Մեծ պատերազմում զոհվել է հայրը, սակայն Գուրգեն Եսայանը անհայրության դառնությունը սրտին, գյուղի 7-ամյա դպրոցն ու Դիլիջանի մանկավարժական ուսումնարանն ավարտել է գերազանցությամբ:

- Ուզում էի մեր դարբնոցում սիրեցյալ հորս գործը շարունակել, սակայն Ալեքսան պապս արտասվելով, ինձ հորդորեց ուսումս շարունակել, - հեռավոր վերհուշին տրվելով, խորհրդավոր ժպիտով ասում է ՀՀ վաստակավոր ուսուցիչը, ապա հայացքը շաղախելով կարոտի գույներին, լուսավոր թախիծով ավելացնում, - իսկ մայրս դերձակությունը շարունակեց Կիրովականում, ասել է թե՝ իր արհեստով այստեղ մեզ համար համեմատաբար հեշտ էր հացի փող վաստակել:

Դարբին չդարձավ, սակայն հորից ժառանգած «երկաթյա» կամքով, համարձակ բնավորությամբ և մոր ավանդած բարեսրտությամբ մտավ Հայոց դպրության դարբնոց:

1948 թ.-ին ընդունվել է Երևանի Խաչատուր Աբովյանի անվան պետական մանկավարժական ինստիտուտի տրամաբանության և հոգեբանության ֆակուլտետը և, բուհն ավարտելով, ստացել Հայոց լեզվի և տրամաբանության ուսուցչի որակավորում: 1952 թվականին նշանակվել է Փամբակի թիվ 2 մանկատան դպրոցի ուսուցիչ, 1954 թ.-ին նշանակվել է նույն դպրոցի տնօրեն: 1955 թ.-ին զորակոչվել է Սովետական բանակ, ծառայել հեռավոր Արխանգելսկում: Զորացրվելուց հետո՝ 1956 թ.-ին, վերականգնվել է նախկին աշխատանքում: 1957 թ.-ին Գուրգեն Եսայանի նախաձեռնությամբ բացվում է Փամբակի «Գրանիտ» գործարանի 9-ամյա դպրոցը: Հետագայում, միավորելով Փամբակի թիվ 2 մանկատան, երկաթգծի թիվ 53 յոթնամյա, Փամբակի թիվ 1 մանկատան տարրական դպրոցները և Քարաբերդ գյուղի դպրոցի 5-7 դասարանները, դառնում է նորաստեղծ դպրոցի հիմնադիր տնօրենը:

1965 թ.-ին ընտրվել է Գուգարքի շրջսովետի պատգամավոր, 1970 թ.-ին դպրոցի տնօրենը տեղափոխվել է Գուգարքի ժողկրթբաժին որպես մեթոդկաբինետի վարիչ: 1978 թ.-ին նշանակվել է Հայոց լեզվի և գրականության տեսուչ: 1996 թ.-ին ԿԳ նախարարության Լոռու տարածքային տեսչության գլխավոր տեսուչ, 1997 թ.-ին՝ Լոռու մարզպետարանի կրթության վարչության գլխավոր մասնագետ: 2005 թ.-ին վերընտրվել է Գուգարքի տարածաշրջանի կրթության և գիտության աշխատողների արհեստակցական կազմակերպությունների միության նախագահ: «Գերազանցիկ» ուսուցիչ է, ՀՀ ուսուցիչների թվով 3 համագումարների պատգամավոր: Ստեղծագործական աշխատանքներով 1963 թ.-ին մասնակցել է ԽՍՀՄ ժողովրդական նվաճումների ցուցահանդեսին:

ՀՀ վաստակավոր մանկավարժ է, 2007 թ.-ին պարգևատրվել է կրթության և գիտության նախարարության բարձրագույն պարգևով՝ «Ոսկե» հուշամեդալով: Մանկավարժական վաստակի համար արժանացել է «Մշո Զարմ» գիտակրթական հասարակական կազմակերպության «Ազատ Խլղաթյան» մեդալի:

Փամբակի հիմնական դպրոցի պատին փակցված է հուշատախտակ՝ «Գուրգեն Եսայանի նախաձեռնությամբ 1957 թ. բացվեց Փամբակի 9-ամյա դպրոցը»: Դպրոցում կա նաև հուշանկյուն՝ դպրոցի առաջին ուսուցիչների լուսանկարներով, ինչպես նաև Գուրգեն Եսայանի մանկավարժական գործունեության ամփոփ տարեգրությունը:

Այն տարիներին էր, որ դպրության գործի «խենթ» երախտավորի համարձակ նախաձեռնությամբ դպրոցին կից ստեղծվեց օժանդակ տնտեսություն՝ պտղատու այգով ու ճագարաբուծարանով, ինչը հնարավորություն ընձեռեց, որ դպրոցը դառնա երկարօրյա, իսկ աշակերտներն ապահովվեն ամենօրյա մեկանգամյա սնունդով:

- Այսօր էլ հիշում եմ մանկատան սաներին, հայացքներում՝ հույս ու հավատ, խինդն հանգիստ է, հոգին՝ անվրդով, - արժանապատվորեն հիշում է կյանքի 8-րդ տասնամյակը բոլորող Մեծ Ուսուցիչը:

Լոռու մարզի «Մաշտոց» կրթա-մշակութային կենտրոնն» ՀԿ նախագահությունը, նկատի ունենալով կրթության ասպարեզում ունեցած անուրանալի վաստակը, մանկավարժական գործունեության 60 և ծննդյան 80-ամյակների առթիվ ՀՀ վաստակավոր մանկավարժ, ՀՀ կրթության և գիտության աշխատողների Գուգարքի տարածաշրջանի արհեստակցական կազմակերպությունների միության նախագահ Գուրգեն Գևորգի Եսայանին պարգևատրեց «ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՎԱԶԳԵՆ ԱՌԱՋԻՆ» մեդալով:

***Արամայիս ԴՈՒՐԻՆՅԱՆ***
***Պաղաղբյուրի դպրոցի տնօրեն***

## Ս. ՀԱՐՈՒԹՅԱՆ ՏՈՆՆ ԱՅՍ ՏԱՐԻ ԱՊՐԻԼԻ 24-ԻՆ Է

Այս տարի Ս. Հարության տոնը համընկել է Մեծ եղեռնի բյուրավոր նահատակաց հիշատակի օրվա հետ:

Հարության տոնը հաղթանակն է ողջ մարդկության ընդդեմ չարիքի, հաղթանակն է Աստծո՝ ընդդեմ մահվան:

Հարության հույսով վերընձյուղվում է մեր մեջ կյանքի հավիտենականությունը:

Այս տարի ողջ քրիստոնյա աշխարհը՝ թե լատին, թե հույն, թե Հայ առաքելական եկեղեցին, Ս. Հարության տոնը միևնույն օրն է նշում: Կարծես մարտահրավեր է նետվում անարգ թշնամուն, թե «Մահը կուլ գնաց հաղթության: Ո՞ւր է, մահ, քո հաղթությունը: Ո՞ւր է, գերեզման, քո խայթոցը» (Կորնթ. 15:54-55):

Աստվածային նախախնամությամբ, կարծես թե, բոլոր ազգերը աղոթքի ձայն կբարձրացնեն ի հիշատակ Հայոց մեծ եղեռնի անմեղ նահատակների հոգիների փրկության համար:

***Արարատյան հայրապետական թեմի մամլո դիվան***

# ԵԿԵՂԵՑԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ՝ ՀՈԳԵՎՈՐ ԱՐԹՆԱՑՈՒՄԻ ՆԱԽԱԴՐՅԱԼ

Գեղարքունյաց թեմի առաջնորդարանից ստացված տվյալների համաձայն, վերջին 5 տարում մարզում կառուցվել կամ նորոգվել են ավելի շատ եկեղեցիներ ու մատուռներ, քան դրան նախորդած 15 տարիների ընթացքում: Տարբեր աղանդավորական շարժումների դեմ պայքարելու և յուրաքանչյուր համայնքում մեկ գործող եկեղեցի ունենալու գաղափարը մտահոգում է ինչպես մարզի հոգևոր հոտին, այնպես էլ արտերկրում ապրող ու գործարարությամբ զբաղվող որոշ անհատ բարեգործների: Այս նկատառումներից ելնելով՝ վերջին տարիներին մարզում ակտիվ թափ է ստացել եկեղեցաշինությունը:

Գեղարքունիքի մարզի 5 քաղաքային համայնքներից Վարդենիսի և Գավառի քաղաքային համայնքներում հավատո օջախներ վաղուց եղել են, իսկ Ճամբարակ քաղաքում 2007 թ. բարերար Մելիք Գասպարյանի և համայնքի համատեղ միջոցներով կառուցվեց Սուրբ խաչ եկեղեցին: Կառուցման ընթացքի մեջ է Սևան քաղաքի եկեղեցին, Մարտունիում հաջորդ տարվանից կձեռնարկվի նոր եկեղեցու կառուցումը:

Գեղարքունյաց թեմի հոգևոր առաջնորդ Մարկոս եպիսկոպոս Հովհաննիսյանի խոսքով, հին եկեղեցիների վերանորոգման հարցում շատ կարևոր է պահպանել ճարտարապետական այն բոլոր նորմերը, որոնք ունեն նաև պատմական ժառանգության տարրեր: Ներկայում նորոգության աշխատանքներ են կատարվում Իլիկավանքում (Լանջաղբյուր համայնք), որ իր շրջակայքով հանդերձ եզակի պատմական հուշարձան է՝ մշակութային տարբեր շերտերով: Մշակույթի նախարարության գիտամեթոդական խորհուրդի որոշմամբ՝ նորոգության աշխատանքներն իրականացվում են միջնադարյան տեխնոլոգիայով՝ առանց մետաղի և ցեմենտի, միայն կրով և քարով:

Ընդհանուր տվյալներով, 2008-2010 թթ. նորոգվել կամ կառուցվել են եկեղեցիներ ու մատուռներ Սարուխանում, Շորժայում, Ջորագյուղում, Զոլաքարում, Կարմիրգյուղում, Ներքին Գետաշենում, մեծ Մասրիկում: Հաջորդ տարի ևս մի քանի համայնքներում կսկսվեն եկեղեցու նորոգության աշխատանքներ:

Գեղարքունյաց թեմի հոգևոր առաջնորդի բնորոշմամբ՝ այս փաստը հոգևոր արթնացումի նախադրյալներ է ստեղծում և ժողովրդին համախմբում մեկ ճշմարիտ հավատի շուրջը:

***Նարինե ԱՐԵՎՇԱՏՅԱՆ***

# ՇԵՐԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԴԻՄԱԳԻԾԸ

«Ինչ էլ ասեն Քիմ Քարդաշյանի և նրա մյուս քույրերի մասին, միևնույնն է, ինձ համար Շերը եղել ու մնում է իմ «երազների աղջիկը», գրում է Թոմ Վարդապետյանը «Արմինյն միրոր սփեքթեյթր» շաբաթաթերթի հունվարի 15-ի համարում: Նա հատկապես անդրադառնում է Շերի հայկականությանն առնչվող հատկանիշներին: Ստորև՝ թարգմանաբար այդ հոդվածը որոշ հապավումներով:

Ուղղակի հմայված եմ նրա տաղանդով և գեղեցկությամբ: Նաև տոկունությամբ: Կարողանալ դիմանալ այսքան երկար ժամանակ Հոլիվուդի և Լաս Վեգասի նման վայրերում և 64 տարեկանում դեռևս հարատևել՝ հեշտ գործ չէ: Դա պահանջում է շպարվել, գրիմավորվել, բայց նաև առավել կրքոտությամբ ու նվիրումով մոտենալ կատարածդ աշխատանքին: Նա շարունակում է մնալ առաջնակարգ դերասանուհի, իսկական ամերիկահայ կուռք:

Այդ իսկ պատճառով ես նրա թեկնածությունն եմ պաշտպանելու «Օսկարի» առաջիկա մրցանակաբաշխության ժամանակ: Եթե «Ֆարս» («Բուռլեսկ») ֆիլմում նրա դերակատարությունը չառաջադրվի թեկնածուների թվում, ես դադարեցնելու եմ «Հոլիվուդ Մեգըզինի» իմ բաժանորդագրությունը և հետաքննություն եմ պահանջելու: Նրա դերակատարումը՝ որպես գիշերային ակումբի սեփականատիրուհու, ուղղակի ցնցող էր ու անթերի:

Նախապես հիացել էի նրա օսկարակիր «Լուսնոտը» ֆիլմով, նաև մյուս ֆիլմերով՝ «Իսթվիկի վհուկները», «Թեյ Մուսոլինիի հետ», «Դիմակ» և այլն: «Ֆարս» ֆիլմում նա նույնքան հմայիչ է: Ահա թե ինչ է գրում քննադատներից մեկը այդ մյուզիքլի մասին. «Աստղ դառնալը երկար փորձառության



արդյունք է: Առանց Շերի «Բուռլեսկ» ֆիլմը հաջողության չէր հասնի»:

Նրա երաժշտական կարիերան նույնքան հարուստ է ու հրապուրիչ: Ցարդ վաճառել է ավելի քան հարյուր միլիոն ձայնասկավառակներ: Համերգային շրջագայությունները դեռևս մեծ պահանջարկ ունեն: 1985-ին, երբ դեռ բարետես լրագրող էի և աշխատում է «Հեյվրիհլ գազեթի» խմբագրությունում, լուր ստացանք, որ Հարվարդ համալսարանում որպես «Տարվա լավագույն դերասանուհու» Շերին շնորհելու են «Hasty Pudding» մրցանակը: Անմիջապես խնդրեցի խմբագրին, որ ինձ գործուղի Քեմբրիջ՝ մեկնաբանելու իրադարձությունը, և նրա դեմքին տատանումներ տեսնելով, ավելացրի, որ «նա իմ ընկերներից մեկն է, ու անձնական կյանքի մանրամասնություններով մեր թերթը կկարողանա առաջ անցնել Բոստոնի բոլոր մյուս թերթերից»:

Իրականությունից շատ հեռու չէր իմ ասածը, քանի որ բոլոր հայերն էլ ինչ-որ տեղ իրար մոտիկ են, ազգակից, բարեկամ՝ էթնիկական առումով: Եվ իմ այդ առաջին հանդիպումը նրա հետ իսկական «բացահայտում» դարձավ:

Ինչպես միշտ՝ իր թովիչ արտաքինով, նա նստած էր «Մերսեդես» ավտոմեքենայի հետևի նստարանին և ձեռքով թափահարում էր իրեն ճանապարհ դնող ամբոխին: Նա ինձ նկատեց, երբ տեղ հասանք, և ես նրա մամուլի ներկայացուցչից թույլտվություն խնդրեցի հանդիպել նրան:

«Ինչպե՞ս ես», հարցի նրան հայերեն:

Շերն ինձ ցնցեց իր գերազանց հայերենի իմացությամբ՝ հավանաբար հորից ստացած ժառանգությամբ: Ջոն Սարգիսյանը բեռնատարների վարող, թղթախաղերի մոլին դարձած և բանտում նստած անձնավորություն էր եղել, բոլորովին ոչ այն ծնողը, որը երիտասարդ աղջկան պետք է դաստիարակեր: Շուտով ուրիշ հայեր միացան մեզ, և Շերը ոչ մեկին հուսախաբ չարեց հայկական մշակույթի և ժառանգության իր գիտելիքներով: Նկատելի էր հպարտությունը նրա դեմքի վրա: Մյուս լրագրողները՝ իմ մրցակիցները, նախանձում էին և հարցնում՝ «Այդ ի՞նչ լեզվով ես խոսում»: «Է՜յ, մտածեցի, եթե հայ լինեիք, ավելի խոր կհասկանայիք նրան»:

Թերթում իմ տպագրած նյութը հավասարը չուներ: Նրա հայկականությունը սահմաններ չունի: Նա հասնում է բոլորին, իր հայ ազգակիցներին: Եվ այսօր էլ բոլոր օտարներին, որպես ինքնատիպ հայի օրինակ, ես տալիս եմ Շերիլին Սարգիսյանի անունը:

***Հակոբ ԾՈՒԼԻԿՅԱՆ***

*Մեզ հետ, մեր կողքին*

# Սիրիր բոլորին, օգնիր յուրաքանչյուրին...



Սեյրան Ղամբարյան



Սեյրան Ղամբարյանը և Ազգային ժողովի պատգամավոր Վիկտոր Դալլաքյանը վանաձորցիների սիրելի զրուցակիցներն են:



Ս. Հ. Ղամբարյանը և Նոգինսկի մարզպետ Ա. Վ. Լապտևը: Երկու ժողովուրդների բարեկամությունը անսասան է:



Սեյրան Ղամբարյան, Թեոֆիլ Սթիվենսոն: Ուժեղ մարդկանց ամուր բարեկամություն:

Մարդկանց գնահատումը միշտ ավելի բարդ, ավելի նուրբ գործ է, քան այս կամ այն պատմական իրադարձության գնահատումը:

Բայց ընդգծված անհատականությունների մասին ժամանակակցի վկայություններն, անտարակույս, չափազանց արժեքավոր են, որովհետև դրանցում պահպանվում է մարդկանց արարածի մանրամասները, որոնք գրեթե միշտ մոռացության են մատնըվում մեզանից հետո եկողների կամ այն մարդկանց հիշողություններից, ովքեր չեն եղել իրադարձությունների մասնակիցը կամ վկաները:

Սեյրան Ղամբարյանի թիկունքին հինգ տասնամյակ է: Տարեթվերը շատ բան չեն ասում այնպիսի մի հարուստ կենսակերպ ունեցող մարդու մասին, ինչպիսին նա է: Միայն թիկունքին կրած տարիները չեն գնահատում նրա գործունեությունը, այլ չափանիշները, հատկանիշները, մարդկայինը ընկալելու հատկանիշները: Ունի գաղափար, հավատք, հայացք, որ իրենցից արժեք են ներկայացնում, ունի նվիրումի պահանջ: Այն ամենը ինչ առօրյայում, աշխատանքում ուրիշները անվանում են ազնվություն, նա համարում է պարտք, պարտք գործի, գործընկերների ու համաքաղաքացիների նկատմամբ:

Ահա այստեղ է ասված, որ մարդու իրական կերպարը գնահատվում է նրա անհատականությունը խորապես ճանաչած մարդկանց, հասարակության լայն խավերի կողմից ընդունած և արտահայտած կարծիքներով ու վերաբերմունքով:

Հասցրել է նվաճել բարձունքներ, ճաշակել պաշտոնի քաղցրություն, պատասխանատվությամբ վերաբերվել իր աշխատանքին, ինչ մասշտաբի ղեկավար և որտեղ էլ եղել է, միշտ մնացել է ազնիվ, սկզբունքային, առաքինի, բարի ու անկաշառ ընկեր, որի համար էլ արժանացել է համընդհանուր սիրո և հարգանքի: Ու երբ նրան հարցնում են, որ մեջբերումն է ավելի շատ արտացոլում քո էությունը, առանց վարանելու պատասխանում է.

- Սիրիր բոլորին, օգնիր յուրաքանչյուրին...

Ամենից առաջ կարևորում է պետության կայացումը, տնտեսական բարեփոխումները, որով կթուլանա սոցիալական լարվածությունը: Գտնում է, որ դրանով զբաղվողներ շատ կան: Բայց և շեշտում է. «Որպեսզի հիմնահարցերը լուծվեն, ամեն մեկը իր տեղում պետք է անմնացորդ նվիրվի իր գործին, որով նպաստ կբերի երկրին, իր ժողովրդին»:

- Հարկավոր է ամեն մի ժամը, ամեն մի օրը լցնել խոր բովանդակությամբ, ոչ թե լոկ խոսքերով, այլ գործնական քայլերով և միայն այդ միջոցով հնարավոր կդառնա իրականացնել թվացյալ անհնարինը, - ահա պետականության ջատագով մարդու՝ Վանաձոր համայնքի ավագանու անդամ Սեյրան Ղամբարյանի համոզմունքը:

Հայեցողական և սպասողական կեցվածքը նրա համար չէ, նրանը դեպի առաջ նայելն է: Այսօրվա եղածը տեսնելու, այսօրը վաղվա հետ կապելու ձգտումը թույլ են տալիս նրան նախաձեռնություններից անցնել լուրջ գործերի:

Անցած 11 տարիներին լինելով Վանաձոր համայնքի ավագանու անդամ՝ Սեյրան Ղամբարյանը իր գործունեությամբ միշտ հզոր ազդակ է հաղորդել համայնքային կյանքի կարգավորմանը: Նա ոչ միայն քաջատեղյակ է երկրի օրենսդրությանը, բնակչության կենսական կարիքներին ու ակնկալիքներին, այլև ունի այնքան կարևոր մեծ փորձը, որ ձեռք է բերել՝ բնագավառին ծանոթանալով միջազգային ասպարեզներում:

Սեյրան Ղամբարյանի բարի կամքի դրսևորումները սոսկ խոսքերով չեն վերջանում: Համոզմունքն է. «Յուրաքանչյուր ոք ով ունի իր առաքելության հստակ գիտակցումը, ում կենսագրությունը միաձուլված է քաղաքի պատմության հետ, պատասխանատվության իր չափով պարտավոր է նրա բարգավաճմանը նոր դիմագծեր հաղորդի»:

Անցած 11 տարիները մեզ հուշում են, որ Սեյրան Ղամբարյանը քաղաքացիական հասարակության ձևավորման ներուժ ունեցող, պետական ու ընդհանրական շահին անձնականը ծառայեցնող անհատներից է: Անժխտելի է, որ Վանաձորի համայնապատկերի վրա այդ տարիներում ընդգծված է և նրա ձեռագիրը:

Համայնքի տեսուճանաչ մարդ-քաղաքացին շատերին է օգնության ձեռք մեկնում՝ նպաստելով մշակութային և մարզական կազմակերպությունների բնականոն գործունեությանը:

Տարիներ շարունակ աջակցում է արվեստի և մշակույթի բնագավառի ներկայացուցիչների, մարզիկ-մարզիչների, անհատ կատարողների:

Մարզական աշխարհում լինելով ճանաչված մասնագետ /ՀՀ բռնցքամարտի վաստակավոր մարզիչ է, միջազգային կարգի մրցավար, Եվրոպայի, աշխարհի մրցավարական ասոցիացիաների անդամ, 2005 թ. Եվրոպայի բռնցքամարտի առաջնությունում ճանաչվել է լավագույն մրցավար /դրսում բարձր է պահում հայ ազգի որականիշը, հայրենասերի իր տեսակով մեծ ներդրում է ունենում այդ մարզաձևում բարձր արդյունքների հասած մեր մարզիկների հաջողություններում:

Եռանդ կա, ձգտում՝ նույնպես: Կա օժտվածությունը՝ մարդկային առաքինություններով:

Որպես արձագանք՝ իր ժողովրդի, ընկերների սերն ու հարգանքը կա:

Մի խոսքով խոնարհ նվիրումի մի կյանք:

Ինքնահաստատման ճանապարհին այս խորհուրդն է դեպի մեծ կյանք առաջնորդել Սեյրան Ղամբարյան մարդուն, ում անցած ճանապարհը ծանրաբեռնված է կատարած աշխատանքների համապարփակ վաստակով, ձեռքբերումներով, ում համար ամեն օրը թանկ է՝ լեցուն ծրագրերով: Անցնող ժամանակը Սեյրան Ղամբարյանի համար սոսկ օրերի, ամիսների, տարիների համագումար չէ, այլ արարման ժամանակ, բովանդակ աշխատանքային գործունեության ժամանակ, ուր իրականանում են նորանոր հղացումներ:

***ԼԵՒՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ***

# Նժդեհը Դաշնակցության մասին

Ստորեւ ներկայացնում ենք քաղվածքներ Գ. Նժդեհի մի հետաքրքիր՝ «Դաշնակցության առաջացման պատմական պայմանները եւ նրա բնութագիրը» աշխատությունից (1947 թ.): Փոքր-ինչ ուշացումով, բայց նա նույնպես, ինչպես Հ. Քաջազնունին, եկել է «Դաշնակցությունը անելիք չունի այլեւս» եզրահանգման:

«Անհնարին է զուգահեռներ անցկացնել Դաշնակցության սկզբնական եւ այժմյան ղեկավարների, այն ժամանակվա հայդուկների ու հետո եկած մաուզերիստների միջեւ՝ առանց հիանալու առաջիններով եւ խորապես նողկալով վերջիններից: Իսկապես, ի՞նչ համեմատություն կարող է լինել Նիկոլ Դումանի եւ ավազակ Դրոյի, լեգենդար Սերոբի ու մորթապաշտ Տեր-Մինասյանի (Ռուբեն փաշա) միջեւ»:

«Հայկական կուսակցությունների քաղաքական պայքարը խորապես պառակտեց հայ ժողովրդին՝ թուլացնելով նրա դիմադրական ուժն այն պահին, երբ, Թուրքիայում տեղի ունեցող հեղափոխական իրադարձություններին համապատասխան, հայությունից պահանջվում էր լինել համերաշխ, միակուռ, ընդունակ ինքնապաշտպանության: Հայության ակտիվ տարրերը, ի ուրախություն մեր արտաքին թշնամիների, այդ օրերին, երբ սուլթանական բռնակալության դեմ պայքարող Երկրի հայերը նրանց աղաչում էին ուղարկել ղեկավար ուժեր ու զինամթերք, իրենց ժամանակը եւ ուժը վատնում էին ներքին ճակատում: Բռնկված ներքին հակամարտությամբ՝ նրանք թշնամուն հնարավորություն ընձեռեցին անզիջում եւ անպատիժ շարունակել հայերի ոչնչացման քաղաքականությունը»:

«Ինչպես Դաշնակցության աշխարհայացքը, այնպես էլ՝ նրա քաղաքականությունը միշտ տառապել են հակասություններից, բայց առավել աղաղակող հակասությունը մնում է այն հանգամանքը, որ նա, նույնիսկ սոցիալիզմի որդեգրումից հետո, հայկական հարցի լուծման համար (ինչպես ժամանակին Գրիգոր Արծրունին եւ մշակականները) լծվեց եվրոպական իմպերիալիզմի կառքին:

Սպասվում էր, որ Դաշնակցության ղեկավարությունը, իր անհաջողություններից հետո, էմիգրացիայում հանգամանորեն կվերանայի սեփական գործունեության ակտիվն ու պասիվը: Այո, դա սպասվում էր, բայց տեղի չունեցավ, չնայած բոլոր ազգային, հասարակական կազմակերպությունները, որ ունեն պատասխանատվության զգացում, հետագա սխալներից եւ աղետներից խուսափելու համար վերլուծում են իրենց գործունեության անցած ուղին: Ցավոք սրտի, դաշնակցական ղեկավարությանը միշտ չի հերիքել պատասխանատվության զգացումը: Այդ պատճառով էլ նրա սխալները ընդունեցին ազգային աղետի չափեր: Դաշնակցական համագումարները զբաղվում էին չնչին հարցերով, բայց ոչ կուսակցության գործունեության բնույթի վերանայմամբ: Դաշնակցական մտավորական երիտասարդության որոշ



ռեւիզիոնիստական փորձեր մնացին անարդյունք:

Փորձեր արվեցին ճշտել պատասխանատվությունը 1915 թ. Տարոնում (Մուշ), 1920 թ. Նախիջեւանում եւ Շուշիում հայերի կոտորածների ու Ղարսի խայտառակության համար: Դեռ Հայաստանում դաշնակցական իշխանության ժամանակ փորձեր արվեցին հայտնաբերել ու պատժել ներքին գործերի նախարար Կարճիկյանին (որն այդ օրերին ջանում էր սանձազերծել մաուզերիստներին) սպանողներին, հատկապես՝ սպանության ոգեշնչողին:

Հարցեր հարուցվեցին պարսկական հեղափոխական շարժման առաջնորդ Եփրեմ խանի եւ Տարոնի լեգենդար հերոս Գեւորգ Չաուշի սպանությունների վերաբերյալ: Սակայն, այդ փորձերը դաշնակցության ղեկավարության կողմից խեղդվեցին իրենց սաղմնային վիճակում: Դաշնակցական բյուրոն, իրենից բացի, ոչ մի դատական ատյան չի ճանաչում եւ դաժանորեն հետապնդում է բոլոր նրանց, ովքեր հայրենասիրական մտահոգություններից դրդված՝ պատասխանատվության մասին որեւէ հարց են հարուցում:

«Էմիգրացիայում Դաշնակցությունն իր աշխարհայացքի անորոշության, քաղաքական անհրազեկության եւ պատասխանատվության զգացումի բացակայության հետեւանքով դարձել ու շարունակում է մնալ քայքայիչ եւ խորտակիչ ուժ:

Դաշնակցության առավել աններելի արարքների թվում հարկավոր է նշել քաղաքական սպանությունները, որոնք էլ ավելի պառակտեցին հայերին: Դաշնակցությունը, ինչպես նաեւ նրա քաղաքական հակառակորդները՝ հնչակներն ու ռամկավարները, անուղղակիորեն խթանում են հայերի, մասնավորապես, նրա երիտասարդ սերնդի ուծացումը: Իր մեջ պառակտված ժողովուրդն ավելի շատ ցուցաբերում է սեփական բնավորության բացասական գծերը, այդ պատճառով էլ դառնում ավելի վառող այն ժողովրդի աչքում, որի երկրում նա ժամանակավորապես ապաստանել է»:

«Սեփական ինքնապաշտպանությունը դժվարացնող ժողովուրդն արժանի է արհամարհանքի, արժանի է իր ճակատագրին՝ ինչքան էլ որ այն ծանր լինի: Այս տեսանկյունից՝ Դաշնակցությունը, որպես հզոր գաղութային կազմակերպություն, ունի ամենամեծ մեղքը: Այն, ինչն արտասահմանում կոչում են հայկական քարոզչություն, ոչ այլ ինչ է, քան զթասրտություն աղերսող լալկան նվվոց, որն արտասահմանցիների մոտ առաջացնում է լոկ խղճահարություն եւ շարունակ աճող արհամարհանք: Դաշնակցական ղեկավարությունն իսկական քարոզչության մասին հասկացողություն չունի: Նա ցուցադրում է իր այժմյան հոգետր ցնցոտիքը՝ անվանելով այն քարոզչություն: Նա չկարողացավ օգտագործել հայ ժողովրդի պոտենցիալ ուժը հեղափոխության շրջանում, քանզի չէր ճանաչում սեփական ժողովրդին, եւ այժմ ի վիճակի չէ տանել ազգային իրական արժեքների քարոզչությունը, որովհետեւ հիմնավոր չգիտի հայոց պատմությունը, այդ պատմության փիլիսոփայությունը: Եթե նույնիսկ, վերջին քառորդ դարում, որեւէ եվրոպական լեզվով լույս է տեսել այս կամ այն հայամետ գիրքը, ապա հեղինակը արտասահմանցի է եղել:

Այսպես կոչված հայասեր քարոզչության համար Դաշնակցությունը ոչինչ չի արել: Ժամանակ չուներ: Նա զբաղված էր Անդրանիկին սեւացնելու անշնորհակալ գործով: Անդրանիկին վարկաբեկելու համար, Դաշնակցության պատվերով հրատարակվեց նրա դեմ ուղղված մոտ 1000 էջանոց երկհատոր աշխատություն: Ամբողջովին Անդրանիկին նվիրված Սեպուհի հուշերը հանդիսանում են այդ ազգային հերոսին իր փառքի բարձունքից տապալելու դատապարտելի փորձ: Հենց որ Անդրանիկը հեռացավ Դաշնակցությունից, միանգամից դարձվեց «հարբեցող», «անկիրթ», «վախկոտ», «այս կամ այն ճակատում իր մասնակցության համար նախօրոք սակարկող», «աննշան գործողությունների ճանապարհով մեծ դափնիներ քաղող» եւ այլն: Բոլոր ջանքերը ներդրվեցին Անդրանիկին «զարդարելու» քաջնազարյան (դոնքիշոտյան) որակումներով, չգիտակցելով, որ դրանով իրականում ծիծաղում են հայ ազատագրական շարժման վրա, քանզի ժողովուրդն Անդրանիկին համարում է հայ ազատագրական պայքարի խորհրդանիշ»:

«1921 թ., Զանգեզուրից իմ հեռանալու հաջորդ օրը, Արաքսի պարսկական ափին ես թույլ տվեցի «անտակտություն»՝ պատժելով երկու դաշնակցական նախարարների՝ Հակոբ Տեր-Հակոբյանին ու Եփրեմ Սարգսյանին, միաժամանակ եւ Բյուրոյի փոխարինած Գերագույն մարմնի անդամներին: Այդ դեպքից մի քանի օր անց ես Ս. Վրացյանից ստացա նամակ, որում ասվում էր. «Դու թող քո այդ անդրանիկյան արարքները: Անդրանիկը պահում էր իրեն այնպես, ինչպես դու, իսկ այժմ անօգնական թափառում է Եվրոպայում: Կուսակցությունը որոշ հույսեր էր կապում քո անվան հետ: Լսիր քո հին ընկերներին, չլսես՝ քեզ համար վատ: Միայն գիտեմ, որ մարդիկ բարձրանում եմ մեծ դժվարությամբ, շատ տարիների ընթացքում, բայց ընկնում են մեկ վայրկյանում»: Այսպիսով, ինձ հետ արդեն անշնորհակալ էին վերաբերվում, սպառնում սեւացնել մեկ ակնթարթում, զահրնկեց անել, որովհետեւ ես մտրակով ծեծել էի երկու վախկոտի: Այո, ես հաշվի չէի առել, որ դաշնակցական ղեկավարները օգտվում

Ð26

25⊃

են մի տեսակ արտոնյալ դիրքից եւ ազատ են ամեն կարգի պատասխանատվությունից: Ինձ սպառնում էին Անդրանիկի ճակատագրով: Վերը նշված նամակի ստացման օրը ես խորապես ափսոսացի, որ մտրակելու փոխարեն չգնդակահարեցի Դաշնակցության Գերագույն մարմնի այդ երկու անդամներին: Նույն օրը ես զգացի ինձ հոգեպես հեռացած, կտրված Դաշնակցությունից:

«Դաշնակցությունը՝ Դաշնակցության համար»: Հայաստանից դուրս՝ Բյուրոն հավատարիմ մնաց այս լոզունգին: Էմիգրացիայում նա չուներ որոշակի հետեւողական քաղաքական գիծ կամ, ավելի ճիշտ, այն հետեւողական էր միայն ինքնապահպանման գործում՝ գաղափարապես ծառայելով ռուս նարոդնիկների հին «ճանապարհներին»: Դաշնակցությունն իր քաղաքական գիծը չէր պայմանավորում հայ ժողովրդի բացառիկ դրությամբ: Իր հանցագործ անփութությամբ Դաշնակցությունն արհամարհեց մեր ժողովրդին սպառնացող թուրքական (Երկրի հայերի համար) եւ ուծացման (արտասահմանի հայերի համար) վտանգները: Նրա շատ անդամներ համոզված են, որ Հայաստանի ցուցադրական անկախացման գաղափարը կարող է դառնալ նրա գերեզմանափորը: Նրանք դա գիտեն, բայց մինչ այժմ ինքնապատակ կուսակցականությունը եւ կուսակցական երեսպաշտությունը չեն թույլատրել դաշնակցական ղեկավարությանը խելամիտ հարաբերությունների մեջ մտնել սովետական իշխանության հետ: Ճշմարիտ չէ այն հայրենասերը, որ իր հայրենասիրությունը բոլոր դեպքերում կապում է հայրենիքում այս կամ այն վարչակարգի հետ: Անձամբ ես քարոզել եմ սովետների դեմ, բայց իմ անբարյացակամ վերաբերմունքը սովետական իշխանության հանդեպ պայմանավորված էր ոչ թե Հայաստանում գոյություն ունեցող վարչակարգով, այլ բացառապես այն բարեհաճությամբ, որ սովետները ցուցաբերում էին Թուրքիայի նկատմամբ»:

«Դաշնակցությունը պաշտոնապես չմտավ «Պրոմեթեւս»-ի մեջ (դրան խոչընդոտեցին կուսակցության շարքային անդամները), բայց, վերջին պատերազմի նախօրեին, դաշնակցական բյուրոյի կողմից հայ-թուրքական հարաբերությունների վերանայման հարցի շուտափույթ քննարկումը հաստատեց, որ նրան տրված չէ սեփական սխալներից դասեր քաղելու կարողություն: Նա այժմ թուրքերի հետ մերձենալու փորձեր է անում՝ հաշվի չառնելով, որ ներկայիս պայմաններում թուրքերի հետ ընդհանուր լեզու գտնելու փորձերը նշանակում են բռնությամբ տանուլ տալ հայկական հարցը: Սեփական թուլությամբ թելադրված այս քաղաքական ակտը արտասահմանի հայերի մոտ առաջացնում է խորը բարոյազրկում, իսկ քաղաքակիրթ մարդկության մոտ՝ նողկանք»:

«Այժմ Դաշնակցությունը գտնվում է «ո՞ւմ հետ լինելու» երկընտրանքի առջեւ՝ թուրքերի՞, թե՞ ռուս մեծ ժողովրդի: Նա դավաճան կլիներ, եթե վճռականորեն չպատասխաներ. «Ռուսների հետ՝ Թուրքիայի դեմ»: Հենց այս քաղաքական կողմնորոշումն են պահանջում մեր ազգային եւ մարդկային արժանապատվությունն ու հայ ժողովրդի ֆիզիկական գոյության ապահովման շահը: Երկրորդ համաշխարհային պատերազմում դաշնակցական բյուրոն հանդես եկավ պառակտված ճակատով: Ինչո՞վ էր դա պայմանավորված՝ արկածախնդրությա՞մբ, թե՞ կանխամտածված երկերեսանի քաղաքականությամբ: Այս հարցում ես հակված եմ երկրորդ տարբերակին. դաշնակցական ղեկավարությանը հատուկ է թեթեւամտությունը: Այն հանգամանքը, որ Դրոն Բալկաններում, Փարիզում, Բեռլինում բազմիցս ժողովներ գումարեց եւ ստեղծեց քաղաքական կոմիտե, ապացուցում է, որ նրան չհաջողվեց ապահովել Բյուրոյի պաշտոնական հավանությունն իր արկածախնդրական նախաձեռնություններին: Մինչ Սարգիս Արարատյանի հետ ընդհարումը եւ դրանից հետո, Դրոն չդադարեց ջանալ ապահովել իր թիկունքն անհաջողության դեպքում: Նա կանգ չառավ նույնիսկ Հայաստանի ժողովրդին սադրելու փորձի դեմ: Արդյունքում՝ նա հասավ մինչեւ հայրենադավության»:

«Ժողովրդի համար չկա ավելի մեծ չարիք, քան անհատապաշտություն դավանող ղեկավարը: Նա հեշտությամբ է դառնում կոլեկտիվ ջանքերի ու շահերի թշնամին: Այդպիսի ղեկավարն ավելի շուտ ընկնում է սեփական իրավունքների, քան պարտականությունների հետեւից: Նրա իդեալը մեկուսի անձնական երջանկությունն է:

Այսօր այդպիսին են նրանք, որոնք կոչված են ղեկավարելու Քրիստափորի ու Ռոստոմի կուսակցությունը

ա) աշխարհայացքի անորոշություն

բ) քաղաքական անկարողություն

գ) ոչ բավարար պատասխանատվության զգացում.

ահա այն երեք չարիքները, որոնցից աղետալի կերպով տուժել է մեր ժողովուրդը եւ ինքը՝ Դաշնակցությունը:

Դաշնակցությունն այժմ հանդիսանում է որպես մեռնող երեւույթ: Նրա գոյությունն այսուհետ անօգուտ է, անտրամաբանական, ոչ անհրաժեշտ: Նա գտնվում է հակասության մեջ ներկա ժամանակաշրջանի հետ: Նա պետք է հեռանա:

Այս գիտակցումով էլ ես հեռացա Դաշնակցությունից»:

***Գ. Նժդեհ, երկեր, հ.2, էջ 447-458***

# Ջանազան-զարմանազան



1923 թ. մարտի 30-ին Երեւանում Ե. Չարենցի, Մ. Սարյանի, Կ. Հալաբյանի, Վ. Թոթովենցի և ուրիշների նախաձեռնությամբ հիմնադրվեց գրականության և արվեստի դիսկուսիոն ակումբ:

1923 թ. հուլիսի 22-ին Երեւանում տեղի ունեցավ «Սպարտակ» մարզական ընկերության բացումը:

1923 թ. սեպտեմբերի 4-ին Երեւանում բացվեց առաջին խորհրդային առողջապահական գիտահետազոտական հիմնարկը՝ Հայաստանի տրոպիկական ինստիտուտը:

1923 թ. հոկտեմբերի 1-ին բացվեց Հայաստանի պետական կոնսերվատորիան:

1927 թ. հունիսի 15-ին Երեւանում տեղի ունեցավ առաջին ռադիոհաղորդը:

1928 թ. դեկտեմբերին Երեւանում սկսվեց Արթիկի տուֆից առաջին փորձնական շենքի կառուցումը:

1929 թ. նոյեմբերի 29-ին Երեւանում բացվեց պատանի հանդիսատեսի թատրոնը:

1930 թ. հունվարի 17-ին Կուլտուրայի տան շենքում կայացավ գրողների տան հանդիսավոր բացումը:

1931 թ. հունվարի 1-ին հիմնադրվեց Երեւանի պատմության թանգարանը:

1932 թ. մարտի 17-ին շահագործման հանձնվեց խորհրդային շրջանում կառուցված առաջին ջրմուղը:

1933 թ. հունվարի 12-ին գործարկվեց առաջին տրամվայը (նախագծող՝ Ն. Յուզբաշյան):

1933 թ. հուվարի 20-ին Երեւանում բացվեց Պետօպերան՝ Ա. Սպենդիարյանի «Ալմաստ» օպերայով: 1935 թ. օպերային թատրոնը սկսեց տալ նաև բալետային ներկայացումներ և կոչվեց օպերայի և բալետի թատրոն, իսկ 1950 թ. դեկտեմբերի 18-ից՝ օպերայի և բալետի ակադեմիական թատրոն:

1933 թ. մարտին հին շուկայի՝ Ղանթարի տեղում հիմնադրվեց մանկական զբոսայգին:

1933 թ. հուլիսի 18-ին բացվեց Երեւանի օդանավակայանը՝ Երևան-Լենինական առաջին օդային գծով:

1934 թ. սեպտեմբերի 24-ին տեղի ունեցավ առաջին պարաշյուտային թռիչքը Երեւանի օդանավակայանում:

1936 թ. մայրաքաղաքի Էրիվան անվանումը փոխվեց Երևան անվանումով:

1936 թ. դեկտեմբերի 12-ին տեղի ունեցավ «Մոսկվա» կինոթատրոնի հանդիսավոր բացումը:

1937 թ. սեպտեմբերի 6-ին բացվեց Երեւանի մանկական երկաթուղին:

1937 թ. նոյեմբերի 5-ին Երևանի փողոցներով սկսեցին երթևեկել առաջին ավտոբուսները:

1940 թ. հոկտեմբերի 6-ին բացվեցին Երևանի բուսաբանական, իսկ նոյեմբերի 24-ին կենդանաբանական այգիները:

1949 թ. մայիսի 1-ին բացվեց Երևանի տրոլեյբուսի երթուղին:

1950 թ. փետրվարի 10-ին հաստատվեց մեծ Երևանի հատակագիծը:

1953 թ. ապրիլի 5-ին Երևանում բացվեց Հովհ. Թումանյանի տուն-թանգարանը:

1953 թ. մայիսի 31-ին Քանաքեռում բացվեց Խ. Աբովյանի տուն-թանգարանը:

1956 թ. նոյեմբերի 29-ին ավարտվեց Երևանի հեռուստատեսային կայանի առաջին հերթի կառուցումը:

1956 թ. մայիսի 12-ին Երևանում բացվեց «Հրազդան» կամուրջը:

1959 թ. դեկտեմբերի 3-ին կայարանի հրապարակում տեղի ունեցավ Սասունցի Դավթի արձանի հանդիսավոր բացումը (քանդակագործ՝ Ե. Քոչար):

1961 թ. ապրիլի 24-ին շահագործման հանձնվեց հանրապետական մարզադաշտը:

1961 թ. հուլիսի 1-ին «Իլ-18» օդանավով անվայրէջք հաղորդակցություն սկսվեց Երևանի և Մոսկվայի միջև:

1963 թ. սեպտեմբերի 4-ին բացվեց Կարապի

⊃32

# Օհան Դուրյան Հայկական պարադոքս



***Կարպիս ՍՈՒՐԷՆՅԱՆ***

Քառասունվեց տարի առաջ՝ Մեծ եղեռնի հիսնամյակ 1965-ին, երբ դեռ աշխատում էի «Սովետական արվեստ» ամսագրի խմբագրությունում որպես երաժշտական բաժնի վարիչ, գլխավոր խմբագիրը պարտավորիչ շեշտով ինձ առաջարկեց նշանակալից հիսնամյակի առթիվ «մի պատշաճ նյութ» պատրաստել մեր ապրիլյան համարին: Սրտովս էր առաջարկը, բայց «պատշաճ» բառը մի քիչ մտահոգիչ: Նույն երեկո, սակայն, չքացավ «մտահոգիչն» էլ, երբ հանկարծ եկավ բեղուն մտահղացում գրել «Բնիկ ո՞րտեղացի եք» էսսեն: Այդ զուտ հայկական, ամեն մի հայի ճակատագրին կպած հարցը տալ հայրենադարձ հայտնի արվեստագետների սկսած Հարություն Կալենցից, ու սեղմ գծերով ներկայացնել մի յուրօրինակ ճակատագրի պատմություն: Տվի այդ հարցը, անշուշտ, նաեւ Օհան Դուրյանին, որի անունը, որպես մեծ դիրիժորի, քանի տարի արդեն բարձր հնչում էր ոչ միայն մեզանում, այլեւ Հայաստանից դուրս՝ Մոսկվայից մինչեւ Լայպցիգ...

Աշխարհում շատ պարադոքսներ կան, բայց կա՞ն արդյոք այնպիսի պարադոքսներ, որոնցով լեցուն է հայ ժողովրդի կյանքը: Ո՞ւր կարելի է տեսնել, օրինակ, այնպիսի մի պարադոքս, ինչպես այն, որ Փոքր Ասիայի խորքը Քյոթահիա քաղաքում ծնված մի թրքախոս հայ մանչուկ, որբ մնացած, գա Էջմիածին, թուրքերեն խոսելով ու երգելով ներկայանա Հայոց կաթողիկոսին, իր հրաշալի ձայնով ու հայերեն սովորելու սրտանց փափագով հուզի նրան, ապագայում դառնա, իր մեծ նվիրումը խռչընդոտող հալածանքներն իսկ հաղթահարելով, բուն հայ երգն ու դրա հետ հայ ոգին ի լույս աշխարհի բերող սրբացած անուն Կոմիտաս վարդապետ: Այո, մեր պատմությունն է տարօրինակ: Էլ ի՞նչ զարմանաս, երբ զարմանալի բաներ պատասխանեն քո հարցին:

Ի՞նչ իմանա Օհանը, թե իր գերդաստանը բնիկ ո՞րտեղացի է, երբ իր հեռավոր նախնիներն են գաղթել Հայաստանից հարկադրաբա՞ր, ինքնակա՞մ... ի՞նչ իմանա: Գուցե Էրզրումի՞ց, հոնքերը շարժում է ենթադրաբար:

- Էրզրում ըսվածը հին Կարինն է, չէ՞: Անանկ բան մը լսեր եմ, որ անկե են: Լսեր եմ, բայց վստահ չեմ, վստահ չեմ:

- Կամ թերեւս Անիե՞ն, - հուշում եմ: - Մարտիրոս Սարյանը, օրինակ, կսիրե ըսել, որ իր նախնիները Անիեն են: Ուրիշներ ալ...

- Անանկ բան մըն ալ լսեր եմ, - ժպտում է: - Կամ թերեւս երեւակայե՞ր եմ...

Փաստն այն է, որ Օհանը 1922-ին ծնվել է Երուսաղեմում, արաբախոս ընտանիքում, եւ վաղ տարիքին կորցրել է հորը, որ ատաղձագործ էր, անունը Խաչատուր Խաչատուրյան: Մայրը եղել է քրիստոնյա արաբ: Կամ գուցե, հուշում եմ դարձյալ, արաբացած հայերի հետնո՞րդ. չէ՞ որ շատեր են եղել այդպես, օրինակ Հալեպի մոտ մի ամբողջ գյուղ արաբացած հայերի, որոնց եկեղեցու համար տասնվեցամյա որբ Հարություն Կալենցը սրբապատկեր է նկարել, արդեն իսկական արվեստի գործ:

- Իրա՞վ: Զարմանալի, գեղեցիկ: Հայրս հայ, քրիստոնյա արաբ մայրս... չեմ գիտեր, այդպես ալ կրնա ըլլալ, ամեն ինչ կրնա ըլլալ հայուն ճակատագրին մեջ, ի՞նչ ըսեմ...

Հայերեն մի բառ անգամ չի իմացել անհայր մնացած փոքրիկ Օհանը, որ այն ժամանակ ոչ թե Օհան էր, այլ Հաննա: Հայ լինելը իր գիտակցության մեջ տեղ անգամ չի ունեցել: Վեց տարեկանից սկսել է սովորել գերմանական մի դպրոցում, որի բոլոր աշակերտները արաբ էին: Այդ տարիքից էլ իր մեջ հայտնվեց երաժիշտը: Ուզեց ֆլեյտա՝ սրնգափող նվագել, գերմանացի դասատուն մերժեց, ասելով, որ մատները դեռ փոքր են: Իսկ ինքը լաց եղավ, հետո ժամերով աշխատեց, մատները «հասցրեց» ու համոզեց դասատուին: Այդ դպրոցն ավարտելուց հետո Օհանը սովորում էր Երուսաղեմի կոնսերվատորիայում: Միաժամանակ արաբերենի դասատու էր այդ նույն դպրոցում, որի արաբ աշակերտների մեջ դարձյալ մի հայ տղա կար, անունն էլ դարձյալ Օհան:

- Իսկ ես արդեն գիտեի, որ հայ եմ: Օր մը դպրոցին բակը նստած էի ծառի մը տակ: Այդ պզտիկ Օհանը եկավ քովս, գիրք մը բացավ, ինծի ըսավ անշուշտ արաբերեն.

- Նայեցեք, պարոն, ասիկա հայերեն գիրք է: Մեր գիրերն են, կարդա՞մ:

Ինչ մեղքս պահեմ, ես տղային ըսի.

- Դուն գնա դասերդ սորվե:

Բայց հետո սկսա մտածել՝ ես ինչո՞ւ հայերեն չգիտնամ, քանի որ հայ եմ: Մեր տունը հայկական վանքին մոտ էր: Օր մը, երբ տուն կերթայի, ինծի աբեղա մը մոտեցավ եւ ըսավ.

- Լսած ենք, որ դուն հայ ես եւ երաժիշտ: Մեր Ժառանգավորաց վարժարանին մեջ հանդես մը ունինք, դաշնակահար չկա: Չե՞ս գար նվագելու:

Գացի: Սիրով գացի: Հետո ինծի ըսին, որ վարժարանին մեջ արաբերենի ուսուցիչ ըլլամ: Նպատակնին ուրիշ էր: Կուզե-ին ինծի հայերեն սորվեցնել: Ես ալ կուզեի հայերեն, հայերե՛ն սորվիլ: Եվ նորեն գացի: Ուրախությամբ գացի: Ես աշակերտներուս արաբերեն կսորվեցնեի, աշակերտներս ինծի հայերեն: Դասարան կմտնեի ուսուցիչ, կելլեի աշակերտ: Անոնց ուսուցիչը մեկ էր, իմ ուսուցիչներս շատ էին: Գրատախտակին վրա կգրեի սորված հայերեն բառերս, բոլորը մեկ ձայնով սխալներս կշտկեին: Այդպես հայերեն սորվեցա: Աբեղա մը կար՝ անունը Հաբեթ: Անիկա ինծի ոչ միայն հայերեն դաս կուտար, այլեւ հայ երաժշտության կծանոթացներ: Օրե օր սիրտս կլեցվեր: Երբ Կոմիտասի երգերն սկսանք երգել, հոգիս տակնուվրա եղավ: Հանկարծ զգացի, որ իսկապես հայ եմ, հայ: Բոլոր ջիղերովս զգացի: Ա՛լ չէի կրնար իմ ժողովուրդես դուրս ապրիլ: Ես ունեի անուն, ազգանուն, լեզուս ալ սորվեր էի, ալ գիտեի ես ո՛վ եմ այս աշխարհին մեջ, ո՛ր տունին կպատկանիմ: Երգ մը գրեցի երգչախումբի համար. «Դու երկնամերձ իմ հայրենիք, դու հինավուրց իմ Հայաստան»: Ավետիք Իսահակյանի խոսքերն էին: Ատիկա իմ գրած առաջին հայերեն երգս էր: Մնացածը գիտեք: Դիրիժոր եղա, շատ տեղեր պտտեցա, հաջողություններ ունեցա, թերթերն իմ մասին շատ խոսքեր ըսին գերմաներեն ու ֆրանսերեն, արաբերեն ու հոլանդերեն, անգլերեն ու ռուսերեն, բայց հոգիս ինծի բերավ Հայաստան...

Բայց չէ, սովորական հայրենադարձ չէր Օհանը, այսինքն՝ 1946-48 թվականներին զանգվածաբար ներգաղթող կարավաններից մեկում չէր, որ նա եկավ Հայաստան, ինչպես հայրենադարձներից շատ-շատերս: Եկավ 1957-ին՝ մենակ, դեռ ամուրի, երեսունհինգ տարեկան, արդեն հասուն դիրիժոր ու անձնավորություն: Ինչպես, ի դեպ, հինգ տարի հետո ընտանյոք եկավ Հակոբ Հակոբյանը՝ Կիպրոսի Մելգոնյանում երբեմնի ավագ իմ դասընկեր, որ նույնպես հասուն նկարիչ ու անձնավորություն էր արդեն:

Օհանի մասին լսել էի մինչ այդ էլ, ավելի ճիշտ՝ այն օրերին հազվադեպ մեր ձեռքն անցնող մի սփյուռքահայ թերթում կարդացել էի, որ Փարիզում ասպարեզ է ելել մի նոր հայ տաղանդ՝ դիրիժոր ու կոմպոզիտոր Օհան Տուրյան: Եվ ոչ միայն սփյուռքահայ թերթում: Նաեւ մի անգլերեն թերթում, որ այժմ չեմ հիշում ինչպես էր ձեռքս ընկել: Դրա մեջ նույնիսկ զվարճալի զարմանքով կարդացել էի նրա աշխույժ, նրբակիրթ, ուշագրավ անձնավորության մասին փոքր եւ անեկդոտանման դիպվածներ, ինչպես օրինակ՝ երբ մի գեղատեսիլ տիկին դռան մեջ, շտապելիս, հանկարծ բախվել է հայտնի դիրիժորին եւ

➲28

27➲

սկսել է ներողություն խնդրել, ազնվակիրթ երիտասարդ դիրիժորը սիրալիր հաճոյախոսել է՝ «Encore, madame!», եւ տիկնոջ ձեռքն է համբուրել:

Ու մեկ էլ ահա իմացվեց, որ Օհան Տուրյանը եկել է Մոսկվա՝ 1957-ի ամռանը այնտեղ համաշխարհային երիտասարդական փեստիվալին: Բայց շուտով պարզվեց, որ Վազգեն Ա կաթողիկոսի հրավերով նա եկել է Հայաստան, գտնվում է Էջմիածնում: Ես այդ օրերին դեռ Հայաստանի պետական երգչախմբում էի որպես երգիչ, բայց արդեն երաժշտական հոդվածներով աշխատակցում էի «Սովետական արվեստ» ամսագրին, որտեղից կանչում էին ինձ աշխատանքի անցնելու իրենց մոտ որպես երաժշտական խմբագիր: Ոչ միայն պրոֆեսիոնալ շարժառիթը, այլ ավելի, շատ ավելի՝ ուղղակի սրտի մղումը ինձ շտապեցրեց գնալ Էջմիածին, ոչ թե պարզապես ծանոթանալու Օհան Տուրյան դիրիժորի հետ, որի մասին կարդացել էի, ո՛չ, նախազգացումս այն էր, որ մեզ՝ 1946-48-ի հայրենադարձներիս համար այդ օրերին դեռ այնքան հեռավոր, հեռավո՛ր մնացած Սփյուռքից մի հարազատ հոգի եմ գտնելու, այն էլ երաժիշտ հոգի, որ Բեթհովեններով ու Բրամսերով, Մոցարտներով ու Շուբերտներով, ամբողջ երաժշտությամբ լի իմ պատանեկան անցյալի հետ է կապվելու: Էլ ինչպե՞ս, ինչո՞ւ նկարագրեմ արտաքուստ երկու անծանոթների, բայց խորքի հարազատությամբ ասես հին ծանոթների այդ առաջին հանդիպումը, որից էլ սկսվեց մեր բարեկամությունը, անկախ բնավորության տարբերություններից:

Շուտով նա հրավիրվեց ապրելու «Երեւան» հյուրանոցում, ուր առանձին սենյակ հատկացվեց իրեն: Պատրաստվում էր համերգներ տալու Հայաստանի պետական սիմֆոնիկ նվագախմբի հետ Հայֆիլհարմոնիայի մեծ դահլիճում: Եվ միաժամանակ ուսումնասիրում էր սովետահայ կոմպոզիտորների սիմֆոնիկ երկերի պարտիտուրներ՝ դրանցից մեկը կամ մյուսը կատարելու նկատառումով: Ստացվել էր այնպես, որ ես գրեթե միակ մոտիկ ընկերն էի այդ օրերին, իր իսկ ցանկությամբ հաճախ այցելում էի իրեն, լսում իր զգացածը, ապրումները, կարծիքները, հարցերը, մտքեր էինք փոխանակում, բայց ես ավելի լսողի դերում էի պահում ինձ: Հիշում եմ, որ հավանել էր երիտասարդ կոմպոզիտոր Ջիվան Տեր-Թադեւոսյանի Առաջին սիմֆոնիայի պարտիտուրը, ուզում էր կատարել անպայման, խոստումնալից ապագա էր տեսնում այդ կոմպոզիտորի մեջ: Ես փորձում էի նաեւ իմանալ նրա տրամադրությունը, թե եկել է միայն համերգնե՞ր տալու, ինչպե՞ս որեւէ շրջագայող դիրիժոր, հակված չէ՞ արդյոք մնալու Հայաստանում եւ որպես մշտական դիրիժոր աշխատելու մեր սիմֆոնիկ նվագախմբի հետ: Զգում էի, որ իրեն համար էլ կա այդ հարցը, որ կհստականա, երեւի, իր առաջիկա համերգներից հետո:

Ճիշտն ասած, շատ էլ հեշտ չէր նրա հետ ընկերություն անելը: Մինչեւ ուղն ու ծուծը նա երաժշտություն էր, ամեն րոպե դա զգացվում էր նրա խոսքի, դեմքի միմիկայի, շարժուձեւերի, ամբողջ պահվածքի մեջ: Խոսակցության գրեթե ոչ մի այլ նյութ ըստ էության չէր գրավում նրան: Տեսնում էիր, որ նայում է քեզ, լսում, մեկ-մեկ արձագանքում էլ է ասածիդ, ժպտում, ձեռքի մի շարժումով խոսք ասում, բայց զգում էիր, որ ուշքը ուրիշ տեղ է, այսինքն կատարած կամ մանավանդ կատարելիք մի սիմֆոնիայի պարտիտուրի մեջ: Իսկ եթե պարտիտուրը ձեռքին լիներ, պարզապես մոռանում էր քեզ: Այդպես, մի անգամ հյուրանոցից ճաշելու իջանք Նկարիչների տան մոտի սրճարանը, հետը վերցրեց այն պարտիտուրը, որով զբաղվում էր, կատարելիք սիմֆոնիաներից մեկը: Հազիվ նստեցինք, պարտիտուրը բացեց: Չնկատեց էլ, թե ինչպես ճաշը պատվիրեցի, բերեցին: Այսպես ասած՝ երաժշտականորեն ջղային վիճակի մեջ էր:

- Օհան, - ասացի, - ինքդ ըսիր, որ անոթի ես:

- Հա՞, ի՞նչ... Այո, այո, ճիշտ ես, վայրկյան մը, հիմա:

- Զգե այդ պարտիտուրը, հետո կշարունակես: Պատառ մը բան կեր:

- Հա՛, այո, անշուշտ: Պատառ մը բան: Եղբա՛յր, այս ուտելն ալ...

Հիշեց, որ անոթի էր իսկապես, կերավ մի քանի պատառ, ախորժակով, հետո երեւի չքացավ անոթության զգացողությունը, երաժշտականորեն ջղային վիճակը քաշեց իրեն դարձյալ դեպի պարտիտուրը: Բայց տարօրինակն այն էր, որ չէր էլ նայում պարտիտուրին: Միայն թե ձեռքին լիներ: Համերգներից հետո հասկացա, թե դա ինչ էր նշանակում: Անգիր էր անում կատարելիք երկը: Իսկ այդ պահին, առանց այլեւս ասելու, որ մի պատառ էլ ուտի, նայում էի այդ զարմանալի դեմքին: Լրիվ գունատված դեմքին, դեպի վեր ու աչքերը փակ, ծնոտին սեւ փոքր մորուք, չգիտես ցավի թե հաճույքի փոքր հեւոցներ, փոքր հառաչներ, մինչ ձեռքը մեղմ շարժումներ է անում, ասես նվագախումբն է իր առջեւ: Ապրում է կատարելիք երկը մանրամասներով ու ամբողջությամբ, թվում է՝ ինքն իսկ երկի մարմնացյալ երաժշտությունն է դարձել: Նայում էի լուռ նստած, երբեմն հայացքս թեքելով էլ այդ դեմքից այս ու այն կողմ, առանց այլեւս խանգարելու իր այդ երաժշտականորեն ջղային վիճակին, որ երկյուղալի էր թվում մի քիչ: Սպասում էի, որ ինքը «արթնանա» այդ ստեղծագործական վիճակից: Ու սիրում էի նրան...

Վերջապես ահա իր առաջին համերգի փորձերը նվագախմբի հետ մեծ դահլիճում, ուր ցանուցիր, լուռ նստած էին երաժշտական աշխարհի մարդիկ, որոնք եկել էին, ինչպես ընդունված է, լսելու մի նոր դիրիժորի կամ մի նոր ստեղծագործության պրեմիերայի փորձերը: Ինքս վերեւի մի օթյակում մենակ նստած, սիրտս մի քիչ անհանգիստ էր սպասումով, մինչեւ ահա կուլիսից բեմ մտավ Օհանը աշխույժ, զվարթ, սեւաթույր թեթեւ բաճկոնով, շապկի օձիքը բաց, եւ արդեն նստած նվագախումբը հոտնկայս դիմավորեց Փարիզից եկած, այնտեղ նվագախումբ ղեկավարած հայ դիրիժորին, աղեղները ծափի նման թխթխկացնելով ջութակների կռնակին: Նույն աշխույժ զվարթությամբ Օհանը կանգնեց իր պատվանդանին ու երկու ձեռքով հրավիրեց նվագախմբին նստել, իր բարձր, մի ուրույն հնչեղությամբ, արեւմտահայերենը հստակ առոգանող ձայնով սիրալիր ողջույնի խոսքեր ասաց, մի երկու զվարճաբանեց նույնիսկ, ասես վաղուց ծանոթ լինեին իրեն հայրենական այս լրիվ հայ նվագախմբի տղաները, որոնք, երեւում էր, մի տեսակ զարմացած-զվարթ, դեռ մի քիչ էլ սպասողական ընկալում, ընդունում էին նրան:

Ու մեկեն՝ բոլորովին ուրիշ մթնոլորտ, բացարձակ լռություն, հավաքվածություն: Սկսվեց փորձը: Բեռլիոզի Ֆանտաստիկ սիմֆոնիան...

Ես, որ երկար տարիներ աշխատում էի Հայֆիլհարմոնիայում եւ քանիցս, վոկալ-սիմֆոնիկ երկեր կատարելու առթիվ, ինքս երգչախմբի մեջ կանգնած մասնակից էի եղել դրանց փորձերին ուրիշ դիրիժորների հետ, այսպիսի ոճի փորձ չէի տեսել: Օհան Տուրյան դիրիժորը չասաց բացատրական երկար-բարակ, հոգնեցուցիչ, երբեմն նույնիսկ ուշադրությունը տարտամացնող խոսքեր: Եվ ընդհանրապես ոչ մի ավելորդ խոսք: Միայն մի քանի կոնկրետ ցուցումներ, այն էլ կարծես խրախուսական: Եվ պատվանդանին ուղիղ կանգնած, առանց որեւէ ավելորդ մարմնական շարժումի, մեղմ բարձրացրեց ձեռքերը կրծքի առաջ: Դիրիժորական ճիպոտ չուներ աջին: Ու ձեռքերն սկսեցին խոսել: Եվ նվագախումբը միանգամից այնպիսի կուռ, մաքուր ու լեցուն հնչողությամբ պատասխանեց այդ զուսպ ու պլաստիկ շարժվող ձեռքերի «խոսքին», որ մի պահ թվաց՝ ոչ թե իմ բարեկամ Օհանն է այնտեղ պատվանդանին, այլ սրճարանում իմ դիմաց այն «մարմնացյալ երաժշտությունն» է, որին նայում էի երկյուղալի սիրով, նա է շարժման մեջ դրել նվագախումբը՝ միանգամից այդպիսի զարմանալի հնչողությամբ:

Երբեք չեմ կարող մոռանալ այդ առաջին տպավորությունը:

Համերգին դահլիճը լեփ-լեցուն էր: Պատվո օթյակում ներկա էր Վեհափառ կաթողիկոսն իր շքախմբով: Կային նաեւ պետական այրեր: Անշուշտ, առաջին համերգին գրավիչ էր մանավանդ այն հանգամանքը, որ արտասահմանից եկած հայ դիրիժոր է, եւ տարածված խոսակցությունները նրա մասին: Բայց հենց այդ առաջին համերգն էլ այնպիսի բուռն ընդունելություն գտավ, որ խոսակցություններն ավելի կոնկրետացան ու տարածվեցին արդեն բուն իսկ Օհան Դուրյան դիրիժորի մասին, որ նաեւ, պարզվեց, շատ համակրելի, ժպտերես, նրբակիրթ երիտասարդ է, ինչպես տեսան համերգի ավարտից հետո, երբ իսկույն ներքեւի արտիստական փոյեում խուռներամ լցվեցին խիստ՝ ոգեւորված երաժշտասեր ունկնդիրները՝ նրան շնորհավորելու, իրենց «սրտագին» շնորհակալությունը հայտնելու: Եվ բնական է, հաջորդ մի քանի համերգներին ավելի եւս լեցուն էր մեծ դահլիճը մինչեւ ամենավերին յարուսներն անգամ, ընդունելությունն էլ ավելի բուռն, համերգի ավարտին հոտնկայս ծափահարություններով, ներքեւի արտիստական փոյեն էլ ավելի խուռներամ լցված: Ջերմեռանդ երաժշտասերները ոչ միայն հիացած էին նրա «հրաշալի» կատարումներով եւ դիրիժորական զուսպ ու վայելուչ արտիստիզմով, այլեւ շշմելու չափ զարմացած, որ նա բոլոր այդ ծավալուն երկերը՝ Բեռլիոզի, Բեթհովենի, Չայկովսկու, Վագների եւ այլ, անգիր է վարում. այդ ի՜նչ հիշողություն է, ի՜նչ տաղանդ:

Օհանն էլ, անշուշտ, թեպետ հոգնում էր արդեն, բայց ոգեւորված էր, ուրախ: Միայն մի բանից դժգոհել էր. ինչո՞ւ իր անունը ազդագրերում ճիշտ չեն գրում: Տուրյան է ինքը, ոչ թե Դուրյան: Եվ բացատրեց: Իր

➲29

28➲

Խաչատուրյան ազգանունը կրճատել է, վերածել Տուրյանի: Հարցրին՝ ինչո՞ւ:

- Մեր հայերուս մեջ շատ տարածված է Խաչատուրյան ազգանունը: Բայց միջազգային ասպարեզին մեջ ամբողջ երաժշտական աշխարհի աչքին մեկ Խաչատուրյան կա միայն հայ մեծ կոմպոզիտոր Արամ Խաչատուրյանը: Մեկ եւ միակ: Այդպես ալ պետք է մնա աշխարհի աչքին: Մեկ եւ միակ: Ուրիշ ոչ մեկ հայ երաժիշտ, որ միջազգային ասպարեզ կելլե, պետք չէ կրկնե, պետք չէ խաչաձեւե աշխարհի աչքին մեծ դարձած հայկական «Խաչատուրյան» անունը: Այդ է համոզումս: Կրնա՞ք երեւակայել Բեթհովենին քով ուրիշ Բեթհովեն մը: Մոցարտին քով ուրիշ Մոցարտ մը: Բերլիոզին քով ուրիշ Բերլիոզ մը: Մեծ դիրիժոր Տոսկանինիին քով ուրիշ Տոսկանինի մը: Եվ այլն: Դուք շարունակեցեք: Կրնա՞ք երեւակայել սուրբ անուն դարձած Կոմիտասին քով ուրիշ Կոմիտաս մը: Չեք կրնար: Անկարելի է: Այս է համոզումս...

Մի խոսքով, այդ համերգներից հետո սփյուռքահայ դիրիժոր Օհան Տուրյանը որոշեց մնալ Հայաստանում, արդեն ասելով, որ դա իր երազանքն էր: Եվ հայրենադարձ Օհան Դուրյան դիրիժորը նշանակվեց Հայաստանի պետական սիմֆոնիկ նվագախմբի գեղարվեստական ղեկավար:

Միսենյականի բնակարան հատկացվեց նրան Հայֆիլհարմոնիայի մեծ դահլիճի դիմաց «պրոսպեկտի» վրա հայտնի «Դերասանների տան» դեղին շենքում: Ամուսնացավ, ընտանիք կազմեց: Բնական է, արդեն հաճախ չէինք տեսնվում: Մի օր, սակայն, ինձ կանչեց: Տղա էր ունեցել:

- Գիտե՞ս ինչ դրի անունը, - ասաց մի այնպիսի ոգեւորությամբ, որ թվաց՝ խորհրդավոր նորություն է հայտնում: - Նարեկ դրի: Նարեկ: Կհասկնա՞ս...

- Կհասկնամ,- գլուխս շարժեցի: - Կհասկնամ միտքդ:

- Ասանկ անուն լսա՞ծ էիր մինչեւ հիմա:

- Չէ, չէի լսած: Է՛հ, շնորհավորեմ, այս անունով ալ ապրի տղադ, երկար ապրի, շեն ապրի, քեզի արժանի զավակ ու մարդ ըլլա:

Լուսամուտի գոգում փափուկ կազմով, բաց դեղնավուն, միանման գրքերի փոքր մի դեզ կար: Ֆրանսերեն: Փիլիսոփաների հանրամատչելի կենսագրություններ: Մատենաշար: Տասը-տասներկու գիրք: Սոկրատես, Կանտ, Լայբնից, Դեկարտ, Սպինոզա... Ձեռքս վերցրի Սպինոզան:

- Ասոնք քո՞ւ գիրքերդ են: Չէի տեսած, երբ հյուրանոց կապրեիր:

- Իմ գիրքերս են: Սիրելի գիրքերս: Բոլորը կարդացած եմ: Երբեմն կթերթեմ: Շատ թանկագին են ինձի համար...

Նայում էր ձեռքիս Սպինոզային, դեմքին մի փոքր մտահոգություն:

- Տուր կարդամ այս գիրքը,- ժպտացի:- Կսիրեմ այս փիլիսոփան:

- Բայց... բայց զգույշ կկարդաս, չծալես, չփճանա...

- Անհոգ եղիր, Օհան: Լավ գիրքը ինձի համար սրբության պես բան է: Ուրիշին գիրք տալու մեջ ես ալ քեզի պես եմ: Շուտով այս եղածին պես կվերադարձնեմ գիրքը քեզի, թերեւս կխոսինք ալ Սպինոզայի մասին...

Հաճախ չէինք տեսնվում արդեն, բայց ես միշտ էլ նրան հանդիպում էի Հայֆիլհարմոնիայում: Գնում էի նրա բոլոր համերգներին, երբեմն փորձերին նույնիսկ, մանավանդ երբ նա Երեւանում դեռ չհնչած մի երկ էր պատրաստվում կատարել, միշտ հետամուտ սիմֆոնիկի երկացանկը ավելի ու ավելի հարստացնելու: Ոչ միայն ի պաշտոնե, այսպես ասած, որպես ամսագրի երաժշտական բաժինը վարող, հետեւում էի նրա գործունեությանը, այլեւ մանավանդ, առավել եւս, ինձ համար շատ հետաքրքրական եւ ուրախալի էր տեսնել այդ եռանդուն եւ բոլորանվեր գործունեության հրաշալի արդյունքը: Նվագախմբի մակարդակը ակնհայտորեն բարձրացել էր, եւ նա հարատեւորեն ձգտում էր ավելի բարձրացնել: Երեւանն իր սիմֆոնիկ նվագախմբով համբավ էր ձեռք բերում արդեն ոչ միայն Սովետական Միության մեջ, այլեւ արտասահմանում: Օհանի համերգներին գրեթե միշտ տեսնում էի օտար այցելուներ, որոնք կարծես չէին հավատում իրենց ականջներին ու աչքերին, զարմանքի արտահայտություններով կարծես ուզում էին քողարկել իրենց վայելած գեղարվեստական իրավ հաճույքը, այսինքն պարզապես հիանում էին չհավատալով. անձամբ եմ լսել, երբ նրանցից ոմանք համերգից հետո գալիս էին մոտից տեսնելու դիրիժորին, ասես «շոշափելու» նրան իրենց շնորհակալական խոսքով: Սովետական Միություն շրջագայության եկած երաժիշտներ ավելի ու ավելի հաճախ Մոսկվայից գալիս էին ուղղակի Երեւան մեր սիմֆոնիկի հետ համերգ տալու: Լայպցիգից եկել էր նույնիսկ Գեւանդհաուսի նշանավոր հնագույն սիմֆոնիկ նվագախմբի գլխավոր դիրիժոր Ֆրանց Կոնվիչնին:

Վկա եմ, Օհանի բոլոր համերգներին մեծ դահլիճը ծայրեծայր լեցուն էր լինում: Հենց նրա համերգների շնորհիվ շատ բազմացել, հազարների էր հասել սիմֆոնիկ երաժշտության ունկնդիրների թիվը, ավելին՝ դահլիճում այդ բազմության պահվածքից երեւում էր, որ համերգից համերգ զարգանում, բարձրանում է դասական մեծ երաժշտությանը հաղորդվելու ճաշակը: Ասես տոնականության զգացում էր տիրում դահլիճում, լուռ, բարեպաշտ ունկնդրություն նվիրական մի արարողության, հայացքները՝ բեմում նվագախմբի առաջ գրեթե անշարժ կանգնած սեւազգեստ քուրմին, որի ձեռքերը միայն կախարդական շարժումներով նվագախմբից ի հայտ էին բերում հոգեհույզ երաժշտությունը մերթ հոծ ու լեցուն, մերթ նրբագեղ հնչողությամբ: Ու երաժշտությունը կարծես ճառագում էր մի սրբազան աղբյուրից եւ մի ուրիշ լույսով տարածվում էր, լցնում դահլիճը տոնականության զգացումով: Այո, տոն էր ամեն մի համերգը, ուրիշ բառ չեմ գտնում: Եվ ուրիշ բառ չեմ գտնում դիրիժորի հանդեպ ունկնդիր ժողովրդի տածած զգացման համար, քան այն, որ ժողովուրդը սիրում էր իր դիրիժորին: Եվ այդ սերը ամեն համերգի ավարտին հորդում էր բեմառաջքում կուտակված բազմությունից՝ նրան կրկին ու կրկին բեմ կանչող անդադրում ծափերով եւ ասես իրենց կախարդած քուրմին իբրեւ զոհաբերություն մատուցված ծաղկեփնջերով:

Սենտիմենտալ բանաստեղծություն չեմ անում: Այս էր Օհան Դուրյանի համերգների իրական, կենդանի պատկերը եւ ոգին:

Միաժամանակ ամեն տարի Օհանը համերգային շրջագայության էր հրավիրվում Արեւելյան Եվրոպայի այսպես կոչված «դեմոկրատական» երկրներից, իսկ ավելի անդինից, որտեղից եկել էր ինքը, չէին կարող հրավերներ հասնել, անշուշտ, հայրենադարձ դիրիժորին: Բայց գոնե Լայպցիգը, այս դեպքում բարեբախտաբար, «դեմոկրատականի» սահմաններում էր իր Գեւանդհաուսի նշանավոր նվագախմբով, որից հատկապես հրավիրվում էր Օհան Դուրյանը համերգաշրջանի բացման առթիվ:

Ամեն անգամ արտասահմանյան շրջագայությունից նա հետը բերում էր այն թերթերը, ուր հոդվածներ էին լինում իր՝ համերգների մասին: Գնում էի մոտը՝ ծանոթանալու այդ հոդվածներին: Բոլորի մեջ, անխտիր, նրա դիրիժորական արվեստի մասին բարձր գնահատանքներ, մերթ նույնիսկ «շշմեցուցիչ» ասելու չափ զարմանալի բնորոշումներով: Բնական է, միտք ծագեց, այսինքն ուղղակի պարտավոր զգացի այդ հոդվածներից փոքր ցայտուն հատվածներ թարգմանել, կազմել մի ծաղկաքաղ եւ գոնե մի էջ տպել մեր ամսագրում՝ թերթերի վերնագրերի էլ պոպուրի լուսանկարով: Այդպիսի ծաղկաքաղը, անկասկած, շատ հետաքրքրական կլիներ, կուրախացներ ընթերցողներին: Բայց երբ խնամքով պատրաստած այդ «նյութս» իմ երաժշտական բաժնից ներկայացրի խմբագրություն, հանդիպեցի տարօրինակ անտարբերության, չասելու համար նույնիսկ դժկամության: Մանավանդ պարտքարտուղարի կողմից, որի առաջ վերապահ մնաց նաեւ գլխավոր խմբագիրը:

- Գոնե կարդացեք նյութը, - ասացի,- տեսեք ինչպիսի գնահատականներ:

Պարտքարտուղարը մի աչք գցեց, դժգոհ ծամածռված հեգնանքով դարձավ ինձ.

- Է՞ս ինչ է: Օհան Դուրյանին համեմատում ես Տոսկանինիի հե՞տ: Էն էլ ո՞ւմ: Տոսկանինիի: Ա՞յդ էր պակաս:

- Լսիր, - ասացի, - ես չեմ համեմատողը, լավ կարդա: Վարշավայում լեհական պաշտոնաթերթն է գրել, որ Օհան Դուրյանը իր դիրիժորական արվեստով հիշեցրեց Տոսկանինիին:

- Դե մի բան է, ասել են: Հո ամեն ինչ հալած յուղի տեղ չենք ընդունելու:

- Կարդա՛, կարդա՛: Տես, գերմանական թերթում էլ հոդվածի վերնագիրն է նույնիսկ. «Օհան Դուրյանը հիշեցնում է Արթուր Նիկիշին»:

- Ո՞ւմ:

- Անցյալի մեծ դիրիժոր Արթուր Նիկիշ:

Ուսերը թոթվեց: Տոսկանինին շատ հայտնի անուն է նույնիսկ երաժշտությունից հեռու մարդկանց ականջին հասած: Արթուր Նիկիշն ով է:

- Էս Տոսկանինին հանիր: Չի կարելի այդպես չափից ավելի գովել Օհան Դուրյանին: Հայիզմ ես անում...

Հայի՞զմ: Հասկացա ինչ է ուզում ասել: Ինձնից շատ հեռու բան: Էլ ինչ ասեմ: Առարկե՞մ նրան, վիճե՞մ: Ձեռքս թափ տվի: Բայց ի՞նչ էր այս անակնկալ վերաբերմունքը, որ վրդովեցի ինձ, անշուշտ: Գուցե գավառական մի կամայականությո՞ւն, որ բավական հաճախ տեսնում ենք մեր կյանքում: Մտածեցի՝ հազիվ թե այդ միայն: Եվ արդեն անակնկալ էլ չէր թվում: Սրա տակ մի ուրիշ բան կա: Ականջիս հասել էին Օհանի դեմ խլրդային շարժումներ, նույնիսկ չարաբաստիկ «ախպար» բառի՝ մեր կյանքում այդ անիծյալ դարձած հարցի

➲30

29➲

հետ կապված: Կարեւորություն չէի տվել...

Ըստ 1962-ին Լայպցիգի Գեւանդհաուսում կայացած պայմանավորվածության, Օհանը 1963-ի սեպտեմբերին չորս համերգով բացել էր Գեւանդհաուսի նվագախմբի համերգաշրջանը: Լայպցիգից վերադարձել էր գերմանական թերթերում բազմաթիվ արձագանքներով իր այդ համերգների մասին, ու նաեւ Գեւանդհաուսի նվագախմբից իրեն տրված շնորհակալագրով, որն անպայման ուզում էի տպել մեր ամսագրում՝ թե՛ գերմաներեն ֆակսիմիլեն, թե՛ թարգմանությունը անշուշտ:

Այդ օրերին, Վերդիի ծննդյան 150-ամյակի առթիվ, Օհանը կատարեց մեծ կոմպոզիտորի նշանավոր «Ռեքվիեմը»: Ի դեպ, իսկույն ուշադրություն գրավեց ու ավելի եւս զարմացրեց այն, որ նա այդպիսի վոկալ-սիմֆոնիկ բարդ ու երկարաշունչ ստեղծագործությունն անգամ անգիր էր ղեկավարում, բայց նաեւ դա ակնհայտորեն ցույց տվեց, որ անգիր ղեկավարելը ստեղծագործական խնդիր է Օհանի համար, հենց դրա շնորհիվ նա կարողացավ զարմանալի թեթեւությամբ միակցել նվագախմբի, երգչախմբի եւ չորս մեներգիչների կատարումը եւ անկաշկանդ ճարտարակերտել «Ռեքվիեմի» ամբողջ մոնումենտալ կառույցը: Այդ համերգի մասին իմ գրած հոդվածը մի ամբողջ մանրատառ էջ բռնեց մեր ամսագրում: Դրա հարակից էջին էլ, ահա, պատշաճ համարվեց կատարել իմ առաջարկը՝ տպել Գեւանդհաուսի վերոհիշյալ շնորհակալագիրը, ինչպես՝ նաեւ գերմանական թերթերից մեկի՝ «Միտելդոյչե նոյեստե նախրիխտըն»-ի հոդվածը, որը ես մի հատուկ նպատակադրումով էի ընտրել (Սովետական արվեստ, 1963, թիվ 12):

Ահա շնորհակալագիրը.

«Լայպցիգ, 26 սեպտեմբեր 1963

Պարոն

կապելմայստեր Օհան ԴՈՒՐՅԱՆԻՆ

Շատ հարգելի ու սիրելի պարոն Դուրյան,

Այժմ, երբ Գեւանդհաուսի նվագախմբի վերջին երկու համերգներն իբրեւ գաստրոլային դիրիժոր ավարտեցիք ակնառու հաջողությամբ, ցանկանում ենք Ձեր գերազանց աշխատանքի համար հայտնել Ձեզ մեր սրտագին շնորհակալությունը Գեւանդհաուսի նվագախմբի անունից, նվագախումբ, որի բարձր հարգանքը շահեցիք Դուք թե՛ որպես արվեստագետ, թե՛ որպես մարդ:

Գեւանդհաուսի նվագախմբի համար հատուկ ուրախություն էր Ձեզ հետ նվագելը:

Մեզ թույլ տվեք նվիրել Ձեզ Անտոն Բրուքների 5-րդ, 6-րդ, 7-րդ, 8-րդ եւ 9-րդ սիմֆոնիաների գրպանի պարտիտուրները՝ իբրեւ բարեկամական հիշատակ այս համերգներից:

Հետագա հաջողությունների եւ Գեւանդհաուսում կրկին հանդիպելու անկեղծ ցանկություններով շատ սրտագին ողջունում ենք Ձեզ:

Գեւանդհաուսի նվագախմբի պրոֆկոմիտե

Կ. Հայնց Վերշաու

Հ. Ռինգ»

Եվ ահա վերոհիշյալ թերթի հոդվածը.

«Գեւանդհաուսի այս տարվա համերգաշրջանը բացվեց մի համերգով, որ անմիջապես ցույց տվեց նորից այս կազմակերպության գեղարվեստական բարձր արժեքը: Քանի դեռ Գեւանդհաուսի գլխավոր դիրիժորի տեղը թափուր է մնում, ժամանակավորապես այն լրացնում են գաստրոլի հրավիրված դիրիժորները: Առաջին համերգի ունկնդիրներն առիթ ունեցան ողջունելու ամենեն ավելի ականավորներից մեկին: Սովետական դիրիժոր Օհան Դուրյանը, որ մի տարի առաջ այս նույն տեղում կարողացավ հատուկ ուշադրության արժանանալ Շոստակովիչի 12-րդ սիմֆոնիայի իր հոյակապ մեկնաբանությամբ, համերգն սկսեց Մոցարտի Ռե մաժոր սիմֆոնիայով: <...> Դուրյանը հատուկ հոգատարություն է ցուցաբերում հստակ ու նուրբ հնչողությանը, նրա կարծես խոսուն ձախ ձեռքը խանդաղատանքով արտաբերում է մեղեդիական բոլոր գծերը. նրա այդպիսի ղեկավարության տակ Գեւանդհաուսի երաժիշտները նվագեցին աչքի զարնող ճշգրտությամբ ու թեթեւությամբ եւ կարողացան լավագույնս արդարացնել Մոցարտի այն ցանկությունը, թե վերջին մասը պետք է կատարել «այնքան արագ, որքան հնարավոր է»:

Գեւանդհաուսի նվագախումբն ունի Բրուքների սիմֆոնիաների կատարման մեծ ավանդույթ, որ արդեն ինքնին ապահովում է գեղարվեստական բարձրարժեք մատուցում: Եվ եթե մանավանդ ղեկավարում է Օհան Դուրյանի նման ականավոր մի դիրիժոր, ապա ուրեմն բոլոր տվյալները կան օրինակելի մեկնաբանությամբ մի կատարում լսելու: Սովետական հյուրը Բրուքների 7-րդ սիմֆոնիան կատարեց գերազանց եւ անգիր իմանալով պարտիտուրն իր բոլոր մանրամասնություններով եւ միաժամանակ ի հայտ բերելով գրավիչ մի կենսականություն, որ նրան հնարավորություն տվեց առաջին մասի լայն տակտերում մեղեդիական մեծ կամարներ արձակել եւ ամբողջ վիթխարի կառուցվածքը լրիվ դրսեւորել. եւ այդ բոլորով դիրիժորը ներքին մեծ ջերմություն հաղորդեց ստեղծագործությանը: <...> Ուստի, համերգի ուժեղ տպավորության տակ գտնվող ունկնդիրները կարող են շնորհակալ լինել նվագախմբից եւ մեծ ու համակրելի դիրիժորից բրուքներյան խորունկ մի ապրում վայելած լինելու համար»:

Էջի ներքեւում, շնորհակալագրի տակ, զետեղել էի այս կարճ ծանուցումը.

«Մնում է ավելացնել, որ Գեւանդհաուսի նվագախումբն Օհան Դուրյանին հրավիրել է գլխավոր դիրիժորի դեռ թափուր մնացող պաշտոնին: Նվագախմբի վերջին կապելմայստերն էր հանգուցյալ Ֆրանց Կոնվիչնին»:

Գուցե զարմանալի չէ, որ այն ժամանակ ոչ ոք ուշադրություն չդարձրեց էջի ներքեւում խցկված այս ծանուցմանը, ոչ իսկ խմբագրությունում: Երեւի հավատալի չէ՛ր պարզ ու հստակ ասվածը, թե Օհան Դուրյանը հրավիրվել է այդպիսի պաշտոնի, երբ մանավանդ ոչ մի բացատրություն չկար, փաստի պարզ հաստատում միայն: Իսկ ես այն ժամանակ չէի կարող բացատրությունը հրապարակել: Տակը խնդիր կար: Այժմ արդեն կարող եմ ու պետք է բացեմ այդ խնդիրը, որ հետեւանքներ ունեցավ...

Դրա համար պետք է նախ ընթերցողի ուշադրությունը հրավիրեմ գերմանական թերթից վերեւում բերված հոդվածի սկզբում այս տողերին. «Քանի դեռ Գեւանդհաուսի գլխավոր դիրիժորի տեղը թափուր է մնում, ժամանակավորապես այն լրացնում են գաստրոլի հրավիրված դիրիժորները»:

Գլխավոր դիրիժորի տեղը թափուր է մնացել՝ 1962-ին Ֆրանց Կոնվիչնիի մահից հետո: Այդ տեղը «ժամանակավորապես լրացնելու» համար հայտնի դիրիժորներին գաստրոլի հրավիրելը չհայտարարված մրցույթի դեր է կատարել: Առանձնացվել են երեք դիրիժոր՝ Զանդերլինգ, Նոյման եւ Դուրյան, որոնք այդ թափուր տեղում ընտրվելու համար դրվել են նվագախմբի եւ մշտական ունկնդիրների խորհուրդի փակ գաղտնի քվեարկության: Ընտրվել է Օհան Դուրյանը: Առաջարկվել է նրան պայմանագիր կնքել ու անցնել գլխավոր դիրիժորի պաշտոնին: Իսկ մեր Օհանը, օրինապահության սկզբունքներով դաստիարակված մարդ, որպես իր երկրի «լոյալ» քաղաքացի խնդրել է նրանց, որ նախ դիմեն Մոսկվա, որպեսզի «ըստ օրինաց» կնքվի պայմանագիրը ստանձնելու Գեւանդհաուսի գլխավոր դիրիժորի մեծապես պատվաբեր պաշտոնը, որ հույժ ուրախալի է իրեն համար:

Այս բոլորը ինձ հայտնեց Օհանը հենց իսկույն, երբ Լայպցիգից նրա վերադառնալուց հետո գնացել էի մոտը: Հայտնեց ուրախ, բայց խորհրդապահաբար, երեւի որպես մտերիմ ընկերոջ, պատվիրելով, որ «առայժմ մեր մեջ մնա»: Բայց ինձ մտահոգեց այդ «Մոսկվա դիմելու» հարցը. տասնյոթ տարի արդեն ապրում էի սովետական այս երկրում...

- Թե՞րեւս պետք էր անմիջապես հոն կնքեի՛ր պայմանագիրը, Օհան:

- Օ՛, ոչ, ոչ, օրենքով, պետք է համաձայնեցվեր Մոսկվայի հետ:

- Բայց եթե կնքած ըլլայիր, կատարված իրողություն կլիներ, դե Լայպցիգն ալ Դեմոկրատական Գերմանիայում, պիտի համաձայնվեր Մոսկվան:

- Է՛, հիմա ալ կհամաձայնվի, ի՞նչ կա որ: Ընտրված եմ, չէ՞:

- Չեմ՝ գիտեր, չեմ գիտեր:

- Ի՞նչ կա չգիտնալու: Չեմ հասկնար ըսածդ: Ըլլալիք խնդիր մըն է, շուտով կըլլա: Քիչ մը կսպասեմ, վստահ եմ՝ լուրը կուգա Մոսկվայեն կամ Լայպցիգեն:

- Այնուամենայնիվ խորհուրդ մը տամ, Օհան:

- Ի՞նչ խորհուրդ:

- Խնդիրը տեղեկացուր հոս Զարոբյանին, Քոչինյանին, տեր կանգնին:

- Չէ, չէ, հարցը ինքնիրեն կըլլա, չեմ ուզեր իմ կողմես դիմել հոս, չկարծեն, որ կուզեմ Հայաստանեն երթալ, ճիշտ չէ ատիկա...

- Բայց մեզի համար պատիվ է, որ դուն ես ընտրված հոն գլխավոր դիրիժոր: Գեւանդհաո ւս, որուն ոսկեմատյանին մեջ ի՛նչ դիրիժորներու անուններ կան՝ Մենդելսոնեն սկսած, եւ Արթուր Նիկիշն ալ, որուն անունը հիշվեր է քու արվեստովդ:

- Պատիվ է, բայց պայմանով, որ Հայաստանեն չկտրվիմ: Ա՛յս է իմ օջախս, տարին քանի մը անգամ պետք է գամ՝ հո՛ս ի՛մ մշտական ունկնդիրներուս...

Միամտությո ւն իր վստահությունն էլ, իմ խորհուրդն էլ: Նրա «քիչ մը սպասելը» տեւեց մի ամբողջ տարի, ոչ մի լուր, ո՛չ Մոսկվայից, ո՛չ էլ Լայպցիգից: Իր «առայժմ մեր մեջ մնա» պատվերն էլ խախտեցի ասելուց երեք ամիս հետո ամսագրում այդ փոքրիկ ծանուցումով, դա էլ ուշադրություն չգրավեց: Եվ ապա, ինչպես նախանցյալ ու անցյալ տարի, կրկին հրավեր Լայպցիգից

➲31

30➲

իր ձեռքով բացելու Գեւանդհաուսի նվագախմբի համերգաշրջանը ավանդական Բրուքներով: Այս անգամ վերադարձավ խռովահար:

- Դուն մարգարե՞ ես, Կարպի՛ս...

Դեռ օդակայանում դիմավորելիս ցավ են հայտնել այնտեղ, որ չնայած իրենք դիմել են Մոսկվա համաձայնության համար, բայց ինքը՝ հերր Դուրյանը, ափսոս, հիվանդության թե ինչ-ինչ պատճառներով չի կարողացել ընդունել իրենց նվագախմբի գլխավոր դիրիժորի պաշտոնը: Այդպես են տեղեկացվել:

- Բայց ես սպասո՛ւմ էի, - բացականչել է Օհանը շշմած:

Սպասում էր: Մի ամբողջ տարի: Ու հենց այդ մի տարվա ընթացքում այստեղ պատահեցին՝ տարօրինակ բաներ: Բայց քիչ է ասելը՝ «տարօրինակ»: Այդ բաների խորքում զգացվում՝ էին, ու կայի՛ն անշուշտ, ուրիշ բաներ՝ խորհրդավոր...

Նախ՝ սկսեցին ավելի լսելի դառնալ Օհանի դեմ այն խլրդային շարժումները, որոնց կարեւորություն չէի տվել մի ժամանակ: Հետո արդեն ավելի բացահայտ խոսքեր էին ասվում Հայֆիլհարմոնիայում եւ երաժշտական, նաեւ մանավանդ, ինչպես լինում է ընդհանրապես, մերձերաժշտական անլուրջ շրջանակներում Օհանի դեմ, տարածվում էին ասեկոսեներ: Թե նա ագահ է, գեղարվեստական ղեկավար լինելը բավական չէր, ձգտեց, պնդեց, նվագախմբի ամբողջ վարչական ղեկավարությունն էլ վերցրեց իր ձեռքը, դարձել է տնօրեն-դիկտատոր: Ի դեպ, ինքս էլ դեռ այն ժամանակ մտահոգությունս էի հայտնում վարչականը եւս իր ձեռքը վերցնելու համար, թե ծանրացնում է իր բեռը, եւ չեմ մոռանա ինչ բացատրություն տվեց ինձ: Ասաց, որ իսկական շնորհքով են օժտված մեր սիմֆոնիկի տղաները, կարող է մեր նվագախումբը բարձրացնել այն փարիզյան նվագախմբի մակարդակին, որը վարել է ինքը, բայց մեր այս տղաները ծույլ են, չեն սիրում տանը աշխատել իրենց վրա, պետք է աշխատեն, պատրաստված գան փորձերին, եւ ինչե՞ր կարելի է անել: Ասաց անկեղծորեն, ոգեւորությամբ նույնիսկ, թե հենց դրա համար իր ձեռքն է վերցնում ամբողջ ղեկավարությունը, ջանք չի խնայելու, կհասնի նպատակին այս շնորհքով տղաների հետ, վստահ է:

Երբ ինձ ասում էին, մեր խմբագրությունում կամ այլուր, թե Օհանից դժգոհում են իբր նրա բնավորության որոշ գծերի համար, որպես դիրիժոր, ես պատասխանում էի այդ բամբասանքներին, թե ի՞նչ գծերի մասին են խոսում ակաս-պակաս: Առհասարակ ո՞վ չունի «գծեր»: Իսկ դիրիժորը, մանավանդ, որ բարդ օրգանիզմ է ղեկավարում իր ձեռքի տակ՝ լինի նվագախումբ, երգչախումբ կամ մի ամբողջ օպերա, չունենա՞ խստապահանջության գծեր՝ հասնելու համար այն գեղարվեստական արդյունքին, որով կանգնելու է ունկնդիրների առաջ՝ դահլիճի կիզակետը դարձած իր անձով: Թող կարդան Ստեֆան Ցվայգի սքանչելի էսսեն Տոսկանինիի մասին ու տեսնեն, թե ուժեղ դիրիժորի խստապահանջությունը ինչպիսի շանթային գծեր կարող է արձակել որոտումներով հանդերձ:

Իսկ Օհանը, տեսնում էի, շատ էլ չէր ազդվում այդ բամբասանքներից, անում էր իր գործը նույնքան եռանդուն ու բոլորանվեր, իր առօրյա վարվեցողությամբ



նույնքան նրբակիրթ, հաճախ զվարթ ժպիտն էլ դեմքին, թեպետ երբեմն արդեն մտախոհ զվարթ: Ինձ շատ լավ հասկանալի էր այդ չազդվելը: Նա էլ ուներ բուն ստեղծագործ հոգու այն հատկությունը, այն ներքին բարեմույն «դեւը», այն սոկրատյան «դայմոնը», որի լրիվ տիրության տակ ստեղծագործ հոգին մոռանում է ուրիշ ամեն ինչ՝ ուտել կամ զվարճանալն էլ, ցավը կամ հաճույքն էլ, զրախոսողին կամ թշնամուն էլ, անգամ բարեկամին ու հարազատին էլ: Օհանի ներքին դեւը հենց այն մարմնացյալ երաժշտությունն էր:

Մթնոլորտը, սակայն, սկսեց թեժանալ, երբ Օհանը, որպես տնօրեն՝ կոնկուրս հայտարարեց նվագախմբում՝ իր այն փարիզյան մակարդակի հասցնելու երազանքով: Ես փորձեցի համոզել նրան, որ չանի այդ բանը՝ վտանգավոր եւ մանավանդ անօգուտ: Կոնկուրս ես ասում, կարո՞ղ ես արդյոք ազատվել թեկուզ ամենածույլից, ամենաթույլից, որքան էլ բարձր լինի նպատակդ. այստեղ պարտկոմ կա, պրոֆկոմ կա, «խծբ» կա (խնամի-ծանոթ-բարեկամ), վերեւում էլ Կենտկոմ կա, բողոքներ, կոնֆլիկտ, հարցեր քննել եւ այլն, գլխացավանքի վրա գլխացավանք, ջղերդ քայքայիր: Իսկ եթե խորքում հետին մտքեր էլ կան քո դեմ... Չուզեց հասկանալ: Երեւի չէր էլ կարող հասկանալ: Ու դեռ կոնկուրսը հայտարարեց, երբ ինքը Մերձբալթիկա էր մեկնելու համերգների: Խիստ մտահոգությունս հայտնեցի:

- Հոգ չէ,- ասաց,- ավելի լավ, բացակայությանս ժամանակ թող աշխատին, լավ մը պատրաստվին տղաները:

Եվ... «պատրաստվե՜լ» էին տղաները, երբ վերադարձավ: Նվագախումբը տակնուվրա էր: Թաքուն խմորումները պայթել էին: Մի խայտառակություն էր եռեւեփվում: Օհանի դեմ եւ Օհանի կողմ խմբավորումներ: Զարմանալին այն էր, որ Օհանի դեմ խմբավորման գլխավորողը նվագախմբի պարտկոմն էր (չեմ էլ ուզում այստեղ հիշել այդ անժպիտ, քիթը վեր, կզակը ցցած խոսող ջութակահարի անունը): Սովետական կոլեկտիվում պարտկո՞մն է գրգռում ու գլխավորում խռովությունը ղեկավարի դեմ: Կարծես հակառակը պետք է լիներ պարտկոմի դերը: Սա ի՞նչ է նշանակում: Ոչ միայն զարմանալի է: Շատ տարօրինակ ու կասկածելի: Օհան Դուրյանը, որին «մեծ եւ համակրելի դիրիժոր» են որակել Լայպցիգում եւ ընտրել Գեւանդհաուսի նվագախմբի գլխավոր դիրիժոր, ամիսներ արդեն Մոսկվայի համաձայնության լուրն է սպասում, իսկ մեր նվագախմբի պարտկոմը խռովություն է գլխավորում իր դիրիժոր նույն Օհան Դուրյանի դեմ բացեիբաց, խայտառակում նրան լկտիորեն: Ինչո՞ւ: Ինչպե՞ս կարող է այս երկրում ակնհայտորեն, ինչպես ասվում է՝ օր-ցերեկով լինել այդպիսի բան: Գրողը տանի, ո՞ր սատանայի մատն է սրա տակ: Եվ խայտառակությունը շարունակվում ու շարունակվում է...

Բանը հասավ նույնիսկ քրեական ստորության: Մի երեկո Օհանենց բնակարանում, որ Թումանյան փողոցի ներսերում էր այն ժամանակ, դռան զանգ: Կինը բացում է դուռը, ներս են խուժում սեւ դիմակով տիպեր: Դուրս է նետվում կինը, սանդղահարթակում օգնություն կանչում սրտապատառ ճիչերով: Դիմակավորները սուսուփուս փախչում են շտապ-շտապ. արեցին գործը, սարսափեցրին, դասը տվին Օհանին: Իսկ մեր Օհանը, երբ հաջորդ օրը կինը խռովահույզ պատմում էր դեպքը ինձ, հանգիստ նստել էր իր դաշնամուրի առաջ, որի վրա Կոմիտասի շատ արտահայտիչ մի լուսանկարը կար մշտապես, եւ լուռ լսում էր կնոջ պատմածը, նույնիսկ մի փոքր ժպտաց ինձ աչքով անելով, բայց դեմքը սովորականից ավելի գունատ էր, դեղին կտրած: Հետո հանկարծ ասաց.

- Է՜, հոգ չէ: Սպասե՛ք, սպասե՛ք, ես ցո՛ւյց կտամ նրանց:

Չգիտեմ ինչ եւ ինչպես ցույց տվեց, բայց բանդիտային այդ դեպքը հետաքննվե՞ց, փնտրվեցի՞ն այդ տիպերը: Ոչ մի խոսակցություն չլսվեց այդ մասին: Գուցե այդ տիպերը արդեն ծանո՞թ էին նրանց, ովքեր պետք է հետաքննեին...

Մի առավոտ կանուխ, երբ ես խմբագրությունում մենակ նստած աշխատում էի, եկավ սիմֆոնիկի շեփորահար Աշոտը, լավ երաժիշտ, լուրջ եւ հախուռն տղա: Գիտեի, որ նա՝ գլխավորում է Օհանի կողմը բռնողներին՝ նվագախմբի մեծ մասը, թեեւ ոչ բոլորը, հասկանալի է, նրա նման համարձակ, հախուռնորեն գործունյա: Եկել էր խիստ զայրացած՝ պարտկոմի դեմ. համը հանում է: Պետք է մի բան անել: Ի՞նչ: Մի «ուժեղ» հոդված գրեմ մեր ամսագրում ի պաշտպանություն Օհանի: Է՜հ, Աշոտ, Աշոտ, լավ երաժիշտ, բայց միամիտ այս հարցում, որով եկել է մոտս առավոտ կանուխ. չի պատկերացնում ինչը ինչոց է: Թեպետ մեր իսկ երեսին ամոթ կլիներ այդպիսի հոդվածը «ի պաշտպանություն» Օհան Դուրյանի, որին այնքան բարձր են գնահատել Լայպցիգում, բայց կգրեի, կրքով կգրեի, միայն թե անկարելի է, որ հենց մեր խմբագրությունում, նախ, ընթացք տրվի նման հոդվածի, ուր խնդիրը պահանջում է ասել չասվելիք բաներ, եթե հենց իսկապես, ըստ էության պետք է «պաշտպանել» Օհան Դուրյանին՝ իր եւ շատերի համար իրենց սիրելի մաեստրոյին ումի՞ց, ինչի՞ց, չի՞ հասկանում Աշոտը...

- Դե ի վերջո կզզվցնեն մաեստրոյին, էլի, չե՞մ հասկանում,- գոչեց նա, ինքն էլ ասես հուսահատ մի զզվածությամբ: - Ու մի օր կթողնի, կգնա էստեղից: Բախտը էսպիսի դիրիժոր է տվել մեզ, ու ... չե՞մ հասկանում: Վախենում եմ՝ թքի ու գնա: Ո՞վ է տուժելու: Էլի մենք, էլի մենք...

Եվ իրոք: Նախ մի քանի տարի փաստորեն

➲32

31➲

«գնալու» պես եղավ, երբ Լայպցիգում իրեն առաջարկել էին ղեկավարել իրենց օպերային թատրոնը, եւ ինքը անվարան կնքել էր պայմանագիրը մի քանի տարով: Բայց մերթ ընդ մերթ գալիս էր ի՛ր ունկնդիրներին համերգ տալու: Հետո իսկապես, երեւի, չարակամները «զզվցրել» էին նրան, ինչպես կանխատեսում էր շեփորահար Աշոտը, եւ ի վերջո գնաց Ամերիկա՝ դեպի անորոշություն: Բացակայեց մի ամբողջ տարի: Ի դեպ, ինքս էլ խմբագրությունից դուրս էի եկել, երբ երաժշտական աշխարհին իմ այնքան նվիրված ծառայությունից հետո՝ ինձնից դժգոհած մի երկու հոգի սադրանքներ էին սկսել իմ դեմ: Կտրել էի կապերս այդ երաժշտական աշխարհից՝ նվիրվելու իմ բուն գրական գործին: Երեք տարի թարգմանում էի Դոստոեւսկու «Կարամազով եղբայրներ» վիթխարի գլուխգործոցը՝ դեռ իմ պատանեկան տարիներից երազանք, որն իրագործում էի՝ այդ տիտանական աշխարհի մեջ մխրճված:

Օհանը վերադարձավ 1970-ին: Ամերիկայում, այդ անորոշության օրերին, հոգեպես շատ էր տառապել, երեւում էր դեմքից, նկատելիորեն սպիտակած մազերից:

- Հավատա՛,- ասաց,- գրեթե տունեն դուրս չէի գալիս: Կմտածեի, կմտածեի եւ միայն Երեւանի ծափերն էին, որ հնչում էին ականջիս մեջ, ո՛չ Լայպցիգի, ո՛չ ալ ուրիշ որեւէ տեղի...

Միասին լսում էինք Բրուքների Չորրորդ սիմֆոնիան՝ Բեռլինի նվագախմբի հետ իր կատարման ձայնագրությունը: Պարտիտուրն առաջը դրած, իր այն երաժշտականորեն ջղային վիճակի մեջ էր, տենդոտ հեւալով, հառաչելով, որոշ մասեր կրկնում ու կրկնում էր, ամբողջ սիմֆոնիան թարմացնում հիշողության մեջ: Կատարելու էր այստեղ մեծ դահլիճում: Բրուքներյան լայնաշունչ եւ շատ գեղեցիկ գործ, որ Երեւանում առաջին անգամ էր հնչելու: Բրուքների արդեն մեծ մասնագետ էին համարում Օհանին գերմանացիները, անցյալի այն հոդվածներից մեկում ինքս էի կարդացել, թե Օհան Դուրյանը պետք է գար եւ Բրուքներ կատարեր Գերմանիայում, որպեսզի գերմանացի եւ ավստրիացի դիրիժորները տեսնեին, թե ինչպես պետք է Բրուքներ կատարել: Խոսում, վերլուծում էինք իր մեկնաբանությամբ «տաճարանման» սիմֆոնիան, որն այստեղ պետք է կատարեր Ռադիոյի սիմֆոնիկ նվագախմբով:

- Բայց, - ասացի, - Օհան, պետք է Բրուքների համար դաստիարակված նվագախումբ, որ այս զարմանալի յուրօրինակ գործը հնչեցնես:

- Է հ, - ասաց, - Բրուքների համար դաստիարակված նվագախումբ շատ քիչ կա աշխարհում: Բեռլին, Լայպցիգ, Վիեննա: Նույնիսկ Լոնդոնի նվագախմբի համար դժվար է Բրուքները: Ամերիկայում նոր-նոր սկսած են Բրուքներ ըմբռնել ու կատարել: Որքան հնարավոր է, պիտի անեմ մեր այս նվագախմբի հետ: Միայն թե ժամանակը կարճ է, փորձերը՝ քիչ...

Եվ արեց: Այդքան քիչ փորձերով այսպիսի նվագախումբը հասցնել՝ նման հանգիստ ու վստահ կատարման՝ այս սիմֆոնիայում, այո, միայն Օհանը կարող էր անել: Դարձյալ իր համերգին լեփ-լեցուն հսկա դահլիճը քար լռությամբ ու հուզումով լսում էր երկարատեւ, դժվարըմբռնելի սիմֆոնիան: Ինչպես միշտ, նրա ձեռքերի տակ նվագախումբը ոչ միայն ստացել էր այն ամուր, լիակատար ու նրբագեղ հնչողությունը, որ հատուկ է մեծ դիրիժորներին, այլեւ այդ ձեռքերի քրմային կախարդական շարժումներով, դարձյալ, երաժշտությունը կարծես ճառագում էր մի սրբազան աղբյուրից եւ մի ուրիշ, տոնական զգացումի լույսով լցնում ամբողջ դահլիճը: Վերջում բուռն, հոտնկայս ծափերով ունկնդիրները կրկին ու կրկին բեմ էին կանչում իրենց սիրելի դիրիժորին: Օհանին կարոտել էին ի՛ր ունկնդիրները...

Բայց չարակամները, որոնք չէին ուզում, երեւի, որ Օհանը վերադառնար, դարձյալ սկսեցին խլրդային շարժումները: Եվ Օհանը դարձյալ գնաց: Այս անգամ երկարատեւ: Չգիտեմ ինչու: Ասում էին, որ իր սովետական քաղաքացու (երբեմնի այն օրինապահ «լոյալ» քաղաքացու) անձնագրի ժամկետը վերջանում էր, եւ հակառակ իր բազում դիմումների արտասահմանից, չեն վերանորոգել անձնագիրը, որ նշանակում էր՝ «Էլ մի՛ գա, չենք ուզում»: Եվ դարձել է ուրիշ երկրի քաղաքացի: Չգիտեմ: Ինձ թվում էր, էլ չենք տեսնի իրար: Բայց տեսանք: Եկավ 1991-ին՝ արդեն անկախացած Հայաստանի մշակույթի նախարար Պերճ Զեյթունցյանի նամակով հրավիրված: Ու դարձյալ խնդիրներ...

Մի նոր հալածանք՝ 2001 թվականին: Անպատկառ խոսքեր հրապարակավ: Խիստ վրդովված՝ «Ազգ» օրաթերթում հանդես եկա «Իսկ դուք գիտե՞ք ով է Օհան Դուրյանը» վերնագրով հոդվածով: Թեպետ ծերացել ու վաղուց չէինք տեսել իրար, հաջորդ օրը հուզված եկավ ու ինձ տարավ Նորքի բարձունքներում իր տունը: Ուշադրությունս գրավեց բազմաթիվ կասետներով իր ձայնադարանը՝ արտասահմանի տարբեր քաղաքներում իր համերգների ձայնագրությունները:

Պարապ չի մնացել այնտեղ իր երկարատեւ բացակայության ընթացքում: Ունկնդրեցինք Սեն-Սանսի Երգեհոնով սիմֆոնիան, որ կարծեմ կատարել էր Հարավային Աֆրիկայի Քեյփ-Թաուն քաղաքում:

Օհան Դուրյանի տո՛ւնը Նորքի բարձունքում՝ դիմացն Արարատ:

Մահն այնտեղից տարավ նրան:

Ութսունութ տարեկան էր: Ինձնից երեք տարով մեծ:

Արդյոք կտեսնե՞նք իրար կրկին՝ չգիտեմ ուր...

Է՛ հ, փոքրիկն արաբախոս Հաննա: Որ դարձար Օհան: Կուզեիր հայերեն, հայերե՛ն սորվիլ: Սորվեցար: Կոմիտաս լսեցիր, եւ բոլոր ջիղերովդ զգացիր, որ հայ ես: Մեջդ հայն ու բնածին մեծ երաժիշտը քեզ ասել տվին. «Ալ չէի կրնար իմ ժողովուրդես դուրս ապրիլ»:

Ապրեցի՛ր ժողովուրդիդ մեջ: Չարակամները հաշվից դուրս են արդեն: Ժողովուրդդ քեզ՝ սիրով ընդունեց: Երբ բացակայում էիր՝ կարոտեց: Մեծ երաժշտությամբ ժողովուրդիդ կապեցիր աշխարհի հետ: Եղար մեր մշակույթի պատմության մի պարադոքսը եւս քո ճակատագրով: Զարմանալի պարադոքս:

Եղար մերը: Եղար աշխարհինը: Կամար կապեցիր:

***Հունվար, 2011***

➲26 ***Ջանազան-զարմանազան***

լիճը:

1967 թ. սեպտեմբերին սկսվեցին երևանյան քարայրի պեղումները:

1967 թ. նոյեմբերի 25-ին բացվեց Ալ. Սպենդիարյանի տուն-թանգարանը:

1967 թ. նոյեմբերի 26-ին բացվեց Մարտիրոս Սարյանի տուն-թանգարանը:

1967 թ. նոյեմբերի 29-ին տեղի ունեցավ Մեծ եղեռնի զոհերի հիշատակին նվիրված կոթողի բացումը Ծիծեռնակաբերդում (հեղինակներ՝ Ս. Քալաշյան, Ա. Թարխանյան, Վ. Խաչատրյան):

1967 թ. դեկտեմբերին բացվեց Երևանյան լիճը:

1968 թ. հոկտեմբերին անցկացվեց «Էրեբունի - Երևան» առաջին պաշտոնական տոնակատարությունը, նշվեց Երևանի հիմնադրման 2750-ամյակը:

1968 թ. հոկտեմբերի 22-ին բացվեց «Էրեբունի» թանգարանը:

1971 թ. փետրվարին Երևանում շարք մտավ Շտապօգնության մասնագիտացված հիվանդանոցը:

1971 թ. մայիսի 19-ին բացվեց «Հրազդան» կենտրոնական մարզադաշտը:

1974 թ. հունիսի 26-ին Երևանում բացվեց հայ մեծ ճարտարապետ Ալ. Թամանյանի հուշարձանը (քանդակագործ՝ Ա. Հովսեփյան):

1977 թ. հուլիսի 4-ին Երևանում բացվեց ծիրանին նվիրված միջազգային սիմպոզիում, որին մասնակցեցին գիտնականներ աշխարհի տարբեր երկրներից:

1978 թ. նոյեմբերի 29-ին ծնվեց մայրաքաղաքի միլիոներորդ քաղաքացին: Երևանը դարձավ նախկին ԽՍՀՄ-ի 18-րդ միլիոնանոց քաղաքը:

1983 թ. հանդիսավոր կերպով բացվեց Մարզահամերգային համալիրի մարզադահլիճը, իսկ 1984 թ. հոկտեմբերի 13-ին շահագործման հանձնվեց ողջ համալիրը:

1990 թ. դեկտեմբերի 10-ին Երևանի նախկին կինոյի տանը տեղի ունեցավ հնաբնակ երևանցիների հիմնադիր կոնֆերանսը, ստեղծվեց Հնաբնակ երևանցիների ասոցիացիան:

1991 թ. մարտի 28-ին Երևանի քաղաքային խորհուրդը որոշում ընդունեց Հանրապետության հրապարակից Լենինի արձանը հանելու մասին:

1991 թ. մայիսի 28-ին Հանրապետության հրապարակում առաջին անգամ տոնվեց Անկախության օրը:

1992 թ. ապրիլի 1-ին սկսեց գործել Երևան-Փարիզ ուղիղ հեռախոսային կապը:




1994 թ. հոկտեմբերի 18-ին «Հրազդան» մարզադաշտում տեղի ունեցավ «Նավասարդյան խաղեր» մարզահանդեսի հանդիսավոր բացումը:

1994 թ. հոկտեմբերի 30-ին բացվեց «Կասկադը»՝ մայրաքաղաքի ճարտարապետական, մշակութա-

# Խոսելով միմյանց հետ՝
## Անձնական հիշողություններ անցյալի մասին

Ով ունի անցյալ, նա չի կարող ետ չնայել, ով ունի պատմություն, նա չի կարող հիշողություններ չունենալ: Հայ ժողովորդը ունի իր պատմությունը, և այդ պատմությունն ունի ողբերգական էջեր, բայց այն միաժամանակ նաև հերոսական պատմություն է, քանի որ մեր ժողովուրդը ամենադաժան անցյալում, բարբարոս ժամանակներում, անդուլ մաքառման պայմաններում չի ընկճվել, չի ոչնչացվել, ապրել է թեկուզ հոշոտված, արնաքամ, բայց կարողացել է դուրս պրծնել պատմության արունոտ ժանիքներից ու հասել մեր օրերը:

Գերմանիայի Ժողովրդական Բարձրագույն Դպրոցների միջազգային համագործակցության ինստիտուտը «Անատոլիայի մշակույթ» կազմակերպության և «Հազարաշեն» Ազգաբանական հետազոտությունների հայկական կենտրոնի հետ մեկտեղ 2009 թ-ից սկսել է հայ-թուրքական հարաբերությունների բարելավման և հաշտեցման մի ծրագիր, որը հովանավորում է Գերմանիայի Արտաքին գործերի նախարարությունը:

Ծրագիրը իր մեջ ընդգրկում է մի շարք միջոցառումներ, այդ թվում և ցուցահանդեսներ, որոնք տեղի ունեցան Հայաստանում /Գյումրի, Վանաձոր, Իջևան, Երևան/ և Թուրքիայում /Ստամբուլ, Դիարբեքիր, Անտաքյայում/:

Հայաստանում, Թուրքիայում բանավոր պատմության ուսումնասիրության արդյունքի ծնունդ է «Խոսելով միմյանց հետ՝ անձնական հիշողություններ անցյալի մասին Հայաստանում և Թուրքիայում» խորագրով ցուցահանդեսը և նույն անունով անգլերեն, հայերեն և թուրքերեն լեզուներով տպագրված գիրքը /հեղինակներ Լեյլա Նեյզին և Հրանուշ Խառատյան-Առաքելյան/:




Այս ցուցահանդեսը յուրահատուկ է նրանով, որ հայ և թուրքական ընդհանուր անցյալը առաջին անգամ ներկայացված է անձնական հիշողություններով:

**Անկասկած օգտակար եւ շատ կարեւոր է սույն ցուցահանդեսը, երկրորդ կարծիք չի կարող լինել: Սա մի յուրահատուկ հոգեթերապիա է երկու ժողովուրդների համար: Իսկ բուժումը ցեղասպանության ճանաչումն է Թուրքիայի կողմից: Երկու ժողովուրդների բուժումն է լինելու դա:**

*Խորեն Գասպարյան, բանաստեղծ, թարգմանիչ*
*Վանաձոր*

**Ամենադժվարը նոր խոսք ասելն է եւ որ այն հասու լինի, այսինքն ձեւը ճիշտ ընտրելն է կարեւոր: Այն Ձեր մոտ ստացվել է:**

*Արա Պապանյան*
*Հ. Շիրազի թանգարան*

Բանավոր պատմությունը թույլ է տալիս նոր տեսանկյունից նայել պատմությունը և սովորական մարդուն՝ որպես պատմության ներկայացուցիչ:

Հիշողությունը պատմությունը ի մի բերելու միջոց է:

Երկու երկրներում էլ լռում են պատմության կրողները, ինչու ոչ, զոհերը, որոնք պահել են անցյալի փաստերը իրենց հուշերում կամ փոխանցել են իրենց երեխաներին և թոռներին:

Ստեղծագործական այս պրոցեսի ընթացքում, որը բաղկացած է խոսելուց, լսելուց և երկխոսությունից, հույս կա, որ այս ցուցահանդեսը ավելի պինդ կապ կհաստատի մեր երկու հասարակությունների հաշտեցման գործընթացում, որը կներգրավի իր մեջ պատասխանատվության ընդունումը ու ներման ձգտումը: Հաշտեցումն է այս ցուցահանդեսի նպատակը, փոխադարձ հարգանքն ու վստահությունը:

***Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***

---

*Սիրավան ՍԵՎՈՒՆԻ*

## Արյան կանչով
### Աշոտ Քոչկոնյանի հիշատակին

Սարերի ուսից արևը ծագող
Երկիրն էր հինում գույներով արյան,
Քնարիդ լարին բերում էր ներբող
Շողերի կարոտ բողբոջը գարնան:

Եվ քո հոգու մեջ համշենի ոգին,
Թևերը փռած արծվի պես հզոր,
Մասիսներից դեն սուրում էր ուժգին,
Ուր անապատն էր տնքում արնածոր:

Հայի մորմոքը հոգումդ ամբարած,
Դու նզովեցիր յաթաղանը կեռ,
Անմեղ զոհերը անխաչ համբառնած
Տեր Զորի ճամփին հառաչում են դեռ:

Օրհասից փրկված հայեր անկոտրում
Այս զառ ափերը Սև ծովով անցան,
Եվ ռուսաց ազնիվ ավետյաց երկրում
Ամեն ազգի հետ եղբայրներ դարձան:

Թեյի դաշտերը եղան երգի տող,
Միշտ ոգևորեց Ախունը չքնաղ
Եվ թեժ մտքերդ անվերջ պրպտող
Սրտերը լցրին բարության շաղախ:

Հյութեղ բարբառը ոգու ճաճանչով
Զորավոր ավյուն եղավ քո գրչին,
Եվ դու երգեցիր արյանդ կանչով,
Որ հավե՛րժ ապրի քա՛ղցր համշենին:

Սարերի ուսին արևը ծագած
Երկիրը հինեց գույներով նշխար,
Որ պապենական Համշենը գերված
Վերստին լինի Հայաստա՛ն աշխարհ:

30 հունվարի, 2011 թ.

---

➲32 *Ջանազան-զարմանազան*

յին և տրանսպորտային կարևոր կառույցներից մեկը (ճարտարապետներ՝ Ջիմ Թորոսյան, Ասլան Մխիթարյան):

1995 թ. ապրիլի 26-ին Երևանի քաղաքային խորհուրդը որոշեց՝ հաստատել Երևան քաղաքի զինանշանը, որի ուղղանկյուն վահանի վրա երեք երանգներով (ծիրանեգույն, ոսկեգույն, արծաթագույն) պատկերված է Էրեբունիի թևավոր առյուծը, գլխին՝ թագի տեսքով կենաց ծառի պատկերը, ձեռքին՝ իշխանության գավազանը, կրծքին՝ կլոր վահանի մեջ հավերժության նշանի վրա Արարատ լեռան պատկերը, ներքևում՝ հայերեն մեծատառերով «Երևան» մակագրությունը (հեղինակներ՝ Ա. Սոխիկյան, Ա. Մխիթարյան, Ա. Ղարիբյան):

1996 թ. Երևանում կայացավ շախմատի համաշխարհային օլիմպիադան:

1996 թ. հուլիսի 13-18-ին Երևանում կայացավ առաջին համահայկական ուսանողական վեհաժողովը «Հայաստանը համայն հայության հայրենիքն է» նշանաբանով:

1998 թ. օգոստոսի 28-ից սեպտեմբերի 5-ը Երևանում տեղի ունեցան Համահայկական 1-ին խաղերը, հանդիսավոր բացումը կայացավ «Հրազդան» մարզադաշտում: Կրակը բերվեց Գառնիից:

2000 թ. փետրվարի 18-ին Զորավար Անդրանիկի աճյունը տեղափոխվեց Երևան, փետրվարի 20-ին ամփոփվեց Եռաբլուրում:

2000 թ. նոյեմբերի 10-ին փորձարկվեց Դավիթաշենի կամուրջը:

2001 թ. սեպտեմբերի 23-ին տեղի ունեցավ Երևանի Սբ. Գրիգոր Լուսավորիչ մայր եկեղեցու օծման արարողությունը:

2001 թ. սեպտեմբերի 25-ին Երևան ժամանեց Հռոմի կաթոլիկ եկեղեցու առաջնորդ Հովհաննես Պողոս 2-րդը:

2003 թ. ապրիլի 23-ին հայ ժողովրդի մեծ բարեկամ Ֆ. Նանսենի շիրմաթմբից բերված հողն ամփոփվեց Ծիծեռնակաբերդի հուշապատում:

2004 թ. հունիսի 30-ին Երևանում անցկացվեց «Ոսկե ծիրան» միջազգային առաջին փառատոնը, որն այնուհետև դարձավ ամենամյա:

2004 թ. օգոստոսի 14-ին Երևանում մեկնարկեց «Մեկ ազգ, մեկ մշակույթ» համահայկական առաջին փառատոնը:

2004 թ. սեպտեմբերի 18-ին ամփոփվեց Երևանի դրոշի մրցույթը. առաջին տեղը գրավեց Կարապետ Աբրահամյանի և Կարապետ Փաշայանի աշխատանքը:

2004 թ. սեպտեմբերի 23-ին ամփոփվեց Երևանի օրհներգի մրցույթը. առաջին տեղը գրավեց Էդգար Հովհաննիսյանի երաժշտությամբ և Պարույր Սևակի խոսքով գրված «Էրեբունի-Երևան» երգը:

2004 թ. հոկտեմբերի 13-ին «Երևանի օր» տոնակատարության ժամանակ պաշտոնապես ընդունվեցին Երևանի խորհրդանիշները՝ դրոշը և օրհներգը, և մշտական պահպանության հանձնվեցին քաղաքի թանգարանին:

2005 թ. դեկտեմբերի 17-ին կառավարությունը հաստատեց Երևանի գլխավոր 5-րդ հատակագիծը:

***Ներկայացրեց Սուսաննա ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ***

